# ԺՈՂՈՎՐԴԻ ՀԱՄԱՐ

Այս տարվա սեպտեմբերին Մոսկվայում տեղի ունեցավ Սովետական Միության Կոմունիստական պարտիայի Կենտրոնական Կոմիտեի պլենումը։

Սովետական Միության Կոմունիստական պարտիայի Կենտրոնական Կոմիտեի Քարտուղար ընկեր Ն. Ս. Խրուշչևը պլենումում հանդես եկավ զեկուցումով։ Նա մանրամասն խոսեց մեր Հայրենիքի գյուղատնտեսության հետագա զարգացման միջոցառումների մասին։ Ընկեր Խրուշչևը ճշեց Կոմունիստական պարտիայի կողմից մեր ժողովրդի, գյուղատնտեսության աշխատողների առաջ դրված խնդիրները, որոնք պետք է իրականացվեն առաջիկա երկու-երեք տարվա ընթացքում։ Պլենումը ընդունեց մի որոշում, որը ցույց է տալիս մեր պարտիայի ու կառավարության ամենօրյա հոգատարությունը սովետական ժողովրդի կյանքն ավելի ունևոր և կուլտուրական դարձնելու համար։

Ամբողջ աշխարհին հայտնի է, որ մեր Հայրենիքը ոչ միայն հզոր արդյունաբերություն, այլև աշխարհի ամենաառաջավոր մեքենայացված գյուղատնտեսություն ունեցող երկիրն է։

Ինչպես խաղաղ շինարարության, այնպես էլ Հայրենական Մեծ պատերազմի տարիներին մեր կոլտնտեսություններն ու սովխոզները երկիրը ապահովում էին մթերքների անհրաժեշտ քանակությամբ։ Մեծ չհաջողությունների հասավ մեր գյուղատնտեսությունը հետպատերազմյան տարիներին։ Պատերազմից հետո նորից ծփացին հացահատիկով հարուստ Ուկրաինայի, Հյուսիսային Կովկասի, Ղրիմի անծայրածիր դաշտերը։ Մեր երկիրը ապահովվեց հացով։ Եթե 1926—27 թվականներին հացահատիկի բերքատվությունը կազմում էր 10 միլիոն 300 հազար տոննա, ապա 1952—53 թվականներին արդեն կազմում է 40 միլիոն 400 հազար տոննա։ Ստեղծվեց բամբակի, շաքարի ճակնդեղի, կարտոֆիլի, մսի, կաթի և այլ գյուղատնտեսական մթերքների առատություն։ 1952—53 թվականներին կարտոֆիլի բերքատվությունը հասավ 12 միլիոն 500 հազար տոննայի՝ 1926—27 թվականների 3 միլիոն տոննայի դիմաց, իսկ կաթի արտադրությունը 4 միլիոն 300 հազար տոննայից հասավ 13 միլիոն 200 հազար տոննայի։

Իրենց բարձր մթերատվությամբ մեր երկրին հայտնի են Կոստրոմայի մարզի «Կարավաևո», «Գորկի II» սովխոզները, Արխանգելսկի մարզի «Նոր կյանք» կոլտնտեսությունը և շատ ուրիշները։ Այդ տնտեսությունները մի տարվա ընթացքում յուրաքանչյուր կովից ստանում են 4500-ից մինչև 6000 կիլոգրամ կաթ։ Բազմաթիվ կոլտնտեսություններ ու սովխոզներ ստանում են կարտոֆիլի, կաղամբի, պոմիդորի և բանջարանոցային այլ բույսերի բարձր բերք։

Ո՞վ չի լսել Մոսկվայի մարզի Գորկու անվան սովխոզի աշխատանքների մասին։ Այնտեղ մի հեկտարից ստանում են 800—1000 ցենտներ կաղամբ, 400—600 ցենտներ գազար, կամ ո՞վ չգիտի Կիևի մարզի Չեռնոբլիսկի շրջանի Ստալինի անվան կոլտնտեսության մասին, որտեղ կոլտնտեսականները յուրաքանչյուր հեկտարից հավաքում են 607 ցենտներ կարտոֆիլ։

Մեր երկրին բամբակի ռեկորդային բերք են տալիս Ուզբեկստանը, Տաջիկստանը, Թուրքմենստանը։

Պլենումում խոսվեց նաև այն կոլտնտեսությունների և սովխոզների մասին, որոնք դեռևս գյուղատնտեսության մթերքների ցածր բերք են տալիս, լավ չեն օգտագործում գյուղատնտեսության տեխնիկան և գիտության նորագույն նվաճումները։

Պլենումը իր որոշումով պահանջեց՝ ավելի մեծ թափ հաղորդել գյուղատնտեսության զարգացմանը։ Հատկապես մեծ ուշադրություն պետք է դարձվի անասնաբուծության զարգացմանը։ Դա կնպաստի կաթի, մսի, յուղի առատություն ստեղծելու գործին, ինչպես նաև կավելացնի սննդի ու թեթև արդյունաբերության արտադրանքի քանակը։ Պարզ է նաև, որ անասնաբուծության զարգացումը կպահանջի բարձրացնել բանջարեղենի, կարտոֆիլի և այլ կուլտուրաների բերքատվությունը։ Պլենումը հատուկ ուշադրություն դարձրեց մեքենատրակտորային կայաններին։ Չէ՞ որ նրանց լավ աշխատանքը վճռական դեր է խաղում գյուղատնտեսության զարգացման գործում։ Մեծ գործ է կատարվելու գյուղատնտեսական կադրերի որակավորման և պատրաստման ուղղությամբ։

Մեր երկիրը տարեցտարի հարստանում է, աճում է աշխատավորների նյութական կարողությունը։ Եվ ժողովուրդը ավելի ու ավելի մեծ պահանջներ է ներկայացնում գյուղատնտեսությանը։ Հենց այդ պահանջները լրիվ կերպով բավարարելու մասին է խոսում Կենտկոմի պլենումի որոշումը։ Կատարելով պարտիայի ու կառավարության կողմից գյուղատնտեսության առաջ դրված խնդիրները, մեր ժողովուրդը ձեռք կբերի նորանոր հաջողություններ կոմունիզմի կառուցման մեծ ճանապարհին։

Լենինի—Ստալինի գործի պայքարին եղի՛ր պատրաստ




№ 10
ՀՈԿՏԵՄԲԵՐ
1953 թ. ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹՅԱՆ 25-ՐԴ ՏԱՐԻ
ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԱՄՍԱԳԻՐ ՊԻՈՆԵՐՆԵՐԻ ԵՎ ԴՊՐՈՑԱԿԱՆՆԵՐԻ ՀԱՄԱՐ

Երևանի 18-րդ դպրոցի պիոներական դրուժինայի երրորդ ջոկատի նորընտիր խորհրդի նիստը։

Լուս. Հ. ՀԵՔԵՔՅԱՆԻ

# Ը Ն Տ Ա Ն Ի Ք

Շ. ԹԱԹԻԿՅԱՆ

Նկ. Մ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆԻ

## 1

Մաթևոսյանն առաջինը Ծովիկին դաս հարցրեց։ Լավ է Ծովիկին լսելը։ Նա պատմում է ոգևորված. լսողին այնպես է համոզում, այնպես հաճելի է հնչում նրա ձայնը։

Առաջ Ծովիկն այդպիսին չէր։ Նա ծույլ չէր, բայց չէր կարողանում ճիշտ պարապել. դասերը պարզապես անգիր էր անում, առանց հասկանալու բովանդակությունը։

— Դու դասն անգիր ես անում,— ասում էր ուսուցչուհին,— բայց չես հասկանում։ Դիմիր ընկերուհիներիդ, թող օգնեն քեզ...

Ծովիկն ինքնասեր էր, ընկերուհիներին չէր դիմում. աշխատում էր սեփական ուժերով հաղթահարել դժվարությունը։ Սիրանուշ Մաթևոսյանին դուր էր գալիս այդ։

Այժմ Ծովիկը փոխվել էր։ Այդ փոփոխության մեջ Սիրանուշ Մաթվեևնան տեսնում էր իր համառ աշխատանքի արդյունքը։



—... Ես դասս հինգի գիտեմ։

Նա կանչեց Ծովիկին։ Ծովիկը վեր կացավ, կանգնեց գրատախտակի մոտ, նայեց դասարանին, սովոր շարժումով ետ գցեց կարճ հյուսերը և սկսեց... Բայց հենց առաջին նախադասությունից ուսուցչուհին զգաց, որ Ծովիկն այդ օրվա դասը լավ չգիտե։ Նա խոսում էր կցկտուր, անկապ, կմկմում էր, իսկ Մաթևոսյանը նրանից շատ ավելին էր սպասում։ Նա Ծովիկի պատասխանի համար «3» գնահատական դրեց։ Եվ ահա այստեղ պատահեց անսպասելին։

— Ես պատրաստել եմ, ես դասս հինգի գիտեմ,— սկսեց աղմկել Ծովիկը։

Մաթևոսյանը շարունակեց դասը, աշխատելով այլևս ուշադրություն չդարձնել աղմկող աշակերտուհու վրա։ Մյուս աշակերտուհիները չէին համարձակվում դասի ժամանակ միջամտել, լուռ և ուշադիր լսում էին ուսուցչուհուն։ Որոշ ժամանակ աղմկելուց հետո Ծովիկը լռեց։

Դասամիջոցին աղջիկները սովորականի նման չվազեցին բակ։ Միայն Ծովիկն էր, որ Մաթևոսյանից անմիջապես հետո ինքն էլ դուրս եկավ դասարանից՝ շրխկոցով փակելով դուռը։ Ոչ ոք տեղից չշարժվեց։ Ամեն մեկը մտածում էր, որ դասարանում վատ բան էր տեղի ունեցել։ Անախորժ լռություն տիրեց, որ առաջինը խախտեց Նուշիկը։

— Ի՞նչ անենք, աղջիկնե՛ր։

Այնպես հարցրեց, որ մինչև անգամ աչքերը խոնավացան։ Նրա հարցն անպատասխան մնաց. բայց շուտով ամեն մեկն էլ սկսեց մտածել. «Ի՞նչ անենք»։ Հետո դասարանը միանգամից աղմկեց.

— Ծովիկին չի կարելի ներել։

— Նա վիրավորեց ընկեր Մաթևոսյանին։

— Հիշո՞ւմ եք, աղջիկնե՛ր։ Սա առաջին անգամը չէ...

Եվ իսկապես. բոլորը հիշեցին, թե ինչպես մի ամիս առաջ Ծովիկը ցածր գնահատականի համար վիճել ու բարկացրել էր ռուսաց լեզվի դասատուին։

Դասարանի մեջտեղը կանգնելով՝ Աստղիկը բարձր ձայնով հայտարարեց.

— Աղջիկնե՛ր, մենք պետք է Ծովիկին զգացնել տանք... Մենք պետք է ստիպենք նրան զգալ իր սխալը։





— Պետք է ստիպենք, պետք է ստիպենք, — կրկնեցին բոլորը միասին։

Զանգը հնչեց։ Երբ Ծովիկը դասարան մտավ, անմիջապես զգաց, որ իր նկատմամբ փոխվել է աղջիկների վերաբերմունքը։ Ոչ ոք նրա կողմն այլևս չնայեց։ Հաջորդ դասամիջոցներին էլ բոլորովին չմոտեցան նրան։

Երբ Ծովիկն ինքը որևէ հարցով դիմում էր աղջիկներին, նրանք պատասխանում էին չոր ու կարճ և շտապում էին հեռանալ։ Տուն գնալիս էլ նրան ոչ ոք չընկերացավ։

Իրենց օղակի պիոներուհի Աստղիկը դժվարությամբ էր յուրացնում հանրահաշիվը և Ծովիկը նրա հետ պարապում էր։ Ծովիկը հարցրեց, թե այդ օրը Աստղիկը ժամը քանիսի՞ն կգա իր մոտ պարապելու։ Աստղիկը սառնությամբ ասաց.

— Ինձ հետ Վարդուշը կպարապի...

— Ինչո՞ւ,— զարմացած և անհանգստացած հարցրեց Ծովիկը։

— Հենց այնպես,— ուսերը վեր քաշեց Աստղիկը։

Աշխատելով անտարբեր ձևանալ, Ծովիկն ասաց.

— Իսկի պետքս էլ չի, ես դասարանում ընկերուհիներ չունեմ,— և քիթը վեր ցցելով հեռացավ։

## 2

— Ես տեսնում եմ, որ ընկերուհիները Ծովիկի հետ վատ են վարվում,— դեպքի երրորդ օրը ասաց Մաթևոսյանը ջոկատավար Քնարիկին։

— Վատ չեն վարվում,— ասաց Քնարիկը և մի պահ մտածելուց հետո ասաց.

— Թող ներողություն խնդրի...

— Ումի՞ց։

— Ձեզանից... և դասընկերուհիներից։ Նա վիրավորել է ձեզ, արհամարհել է դասընկերուհիներին... Նա պետք է ներողություն խնդրի։

Սիրանուշ Մաթևոսյանն իր դասարանում այդ օրը դաս չուներ, բայց դասամիջոցներին մի քանի անգամ եկավ, իմացավ, թե ինչպես են անցնում մյուս առարկաների դասերը։ Ուսուցչանոցում նա հանկարծ հիշեց, որ այդ օրը ինքը չի նկատել Ծովիկին...

— Դուք իմ դասարանում դաս ունեի՞ք այսօր,— ասաց նա աշխարհագրության դասատուին.— Ծովիկ Մարգարյանը դասին ներկա՞ էր։

— Ո՛չ, Սիրանո՛ւշ, նա այսօր դասի չի եկել։



— Ինչո՞ւ ես քիթդ կախել...

Հաջորդ դասամիջոցին Մաթևոսյանն ինքը գնաց դասարան։

— Այսօր դասերից բացակայողներ կա՞ն, — հարցրեց նա, դիմելով Քնարիկին։

— Ծովիկն է բացակայում։

— Պատճառն իմացե՞լ եք,— հարցրեց Մաթևոսյանը։

— Հինգերորդ «Բ» դասարանցի Կիման նրա հարևանուհին է. նա ասաց, որ Ծովիկը հիվանդ է։ Խաղի ժամանակ ընկել է և ոտքը ցավացրել։

Հաջորդ օրը Սիրանուշ Մաթևոսյանի առաջին դասն իր դասարանումն էր։ Ծովիկը դարձյալ չէր եկել։

— Որևէ մեկը գնացե՞լ է նրան տեսնելու։

— Ոչ, պատասխանեցին աղջիկները, ապա զգալով ընկեր Մաթևոսյանի հանդիմանական հայացքը, լռեցին։

Այնուհետև դասը շարունակվեց սովորական կարգով։ Դասամիջոցին Մաթևոսյանն իր մոտ կանչեց ջոկատավար Քնարիկին։ Նրանք բավականին երկար խոսեցին։ Իսկ դասերից հետո մտնելով դասարան, Քնարիկն ասաց.

— Աղջիկնե՛ր, մնացեք, ջոկատի հավաքույթ է լինելու։

3

Արդեն երկու օր էր, ինչ Ծովիկը պառկած էր։ Սկզբում, երբ ոտքի ցավերն ուժեղ էին, նա ոչ մի բանի մասին չէր մտածում, բայց երկրորդ օրը անսպասելիորեն հարցրեց.

— Մայրի՛կ, դպրոցում գիտե՞ն, որ ես հիվանդ եմ։

— Կիմային ասել եմ, որ հայտնի։ Երևի այսօր կգան քեզ տեսնելու։

— Ովքե՞ր,— անսպասելիորեն բորբոքված տոնով հարցրեց Ծովիկը։

— Ինչպե՞ս թե ովքեր, քո ընկերուհիները։

— Նրանք չեն գա...

Մայրը զարմացած նայեց աղջկան։

— Ինչպե՞ս թե չեն գա, ինչո՞ւ ես այդպես կարծում. հիշո՞ւմ ես անցյալ տարի, երբ մի շաբաթ հիվանդ պառկեցիր, գալիս էին, բացատրում նոր դասերդ...

— Անցյալ տարի՛... իսկ հիմա ես դասարանում ընկերուհիներ չունեմ...

— Ինչո՞ւ,— նորից զարմացավ մայրը։ Նա ինչքան էլ աշխատեց, չկարողացավ ստանալ այդ «ինչուի» պատասխանը։

Հենց այդ օրը Ծովիկին այցելության եկան նրա օղակի բոլոր պիոներները։ Տունը միանգամից լցվեց նրանց զուսպ, բայց աշխույժ աղմուկով։

— Շա՞տ է ցավում ոտքդ,— հարցնում էին նրանք։

— Ուզո՞ւմ ես վաղվանից գանք նոր դասերը բացատրենք,— վրա էր բերում մեկ ուրիշը։

Ծովիկը և՛ ուրախ էր, և՛ ամաչում էր։ Ինչպե՞ս էր ինքը ասում, թե դասարանում այլևս ընկերուհիներ չունի...

—Աղջիկնե՛ր, ես շատ լավ եմ, ես արդեն լավ եմ... Ես շուտով կլավանամ...

Եվ իսկապես այդ պահին նա ոչ մի ցավ չէր զգում։ Նրա հոգին լցված էր մի անսահման երախտագիտական ջերմությամբ...

Ծովիկենց օղակի պիոներները ամեն օր, ճաշից հետո, հերթով գալիս և պարապում էին նրա հետ։ Նրանք ոչ մի բանով չէին հիշեցնում Ծովիկին իր արարքը։ Մի անգամ օղակավար Յողիկն ասաց.

— Ընկեր Մաթևոսյանն ասում է՝ «Ծովիկի հետ լավ պարապեցեք, որպեսզի հիվանդությունը նրան չխանգարի գերազանցիկ լինել»։

Իսկ Ծովիկը մտածում էր. «Ներե՞լ են իրեն ընկերուհիները, ընկեր Մաթևոսյանը. մոռացե՞լ են իր արարքը»...

Ընկեր Մաթևոսյանն ու ընկերուհիներն այժմ ամեն ինչ անում են, որպեսզի ինքը ետ չմնա, լավ սովորի։ Ուրեմն նրանք դրա համար են գալիս, և ոչ թե այն պատճառով, որ ներել են իրեն։

Եվ Ծովիկը հետզհետե ավելի էր զգում իր մեղքը։ Չէ՞ որ այդ դասը նա չէր պատրաստել ինչպես հարկն է, միայն մեկ անգամ կարդացել էր։ Իսկ ինքը ինչքա՜ն աղմկեց և դասը խանգարեց։

4

Այդ օրը Ծովիկի հետ պարապել էր Վարդուշը։ Նրա գնալուց հետո, Ծովիկը երկար ժամանակ պառկած էր՝ աչքերը փակ, բայց չէր քնել. Թող կարծեն, թե ինքը քնած է և չխանգարեն... Հետո Ծովիկն անկողնի մեջ նստեց և սկսեց արագ-արագ գրել։

«Ընկեր Մաթևոսյան, դուք իմ մասին վատ մի մտածեք։ Ես հիմարություն եմ արել»...

Ծովիկը չկարողացավ շարունակել։ Նրա մոտ կանգնած էր Մաթևոսյանը։

— Ինչպե՞ս ես,— ասաց նա ժպտալով, ապա նստելով աթոռին, շոյեց աղջկա մազերը։

Ծովիկը կարմրել էր, կոպերը ցած կախել, չէր համարձակվում անգամ նայել Մաթևոսյանի դեմքին։

— Պառկիր, կհոգնես,— ասաց Մաթևոսյանը։

Պառկելով, Ծովիկը վերմակը քաշեց մինչև բիթը։ Չէր մրսում. ընդհակառակը, ան-

*տանելի շոգ էր։ Հանկարծ նա երկու ձեռքով ծածկեց դեմքը։ Ընկեր Մաթևոսյանը տեսավ, որ աղջկա ուսերը ցնցվում են։*

*— Ի՞նչ կարիք կա, ինչո՞ւ ես լաց լինում, խենթո՛ւկ,— ասում էր նա, մեղմությամբ շոյելով աղջկա գլուխը։ Հետո թեքվելով, ավելի մոտենալով Ծովիկին, շշնջաց.*

*— Չէ՞ որ մենք, մի տեսակ՝ մի ընտանիք ենք։ Իսկ ընտանիքում երբեմն թյուրիմացություններ պատահում են, այնպես չէ՞։ Կարևորն այն է, որ դու զգացիր քո սխալը, այնպես չէ՞, դա ամենից շատ քեզ համար է անհրաժեշտ...— Մաթևոսյանը հիշեց, որ ինքն ակամայից կրկնեց Քնարիկի խոսքը։*

*Մի պահ լռություն տիրեց։ Ապա Մաթևոսյանն սկսեց խոսել։*

*— Դու կարծում ես հե՞շտ է... այդպիսի ընտանիք կառավարելը. գիտես ինչ մեծ է իմ ընտանիքը. իսկ առաջ ավելի էր դժվար։ Այ, ես քեզ սկզբից կպատմեմ, իսկ դու լսիր...*



— Ես քեզ համար նամակ եմ բերել...

*Եվ նա պատմեց իր դժվարություններով լի կյանքի մասին։ Ապա հանկարծ ասաց.*

*— Սպասի՛ր, ես քեզ համար նամակ եմ բերել. գրել է իմ նախկին աշակերտը՝ Վարդան Ստեփանյանը. լսիր...*

*«Շատ սիրելի Սիրանուշ Մաթվեևնա. Ես այսօր պարգևատրվեցի «Կարմիր Դրոշի» շքանշանով։ Դրա համար ես շնորհակալ եմ նաև Ձեզանից։ Դուք շատ բան եք արել իմ կյանքի ու ապագայի համար։ Մտածեցի, որ կուրախանաք այդ լուրը իմանալով։ Չէ՞ որ իմ պարգևի մեջ Ձեր աշխատանքն էլ կա։ Հիշո՞ւմ եք սկզբում ի՛նչ չարն էի ես, ի՛նչ վատն էի։ Ինչքա՜ն եմ բարկացրել Ձեզ։ Հետո, իսկապես ես փոխվեցի, չէ՞։ Դուք հիշո՞ւմ եք ինձ, Դուք գիտե՞ք, որ ես շատ-շատ էի սիրում Ձեզ։ Եվ ինչքա՜ն են իմ նմանները, որոնք երախտագիտությամբ են հիշում Ձեզ, և ինչքան կլինեն»...*

*Ծովիկը շունչը պահած լսում էր Մաթևոսյանին, իսկ հետո հարցրեց.*

*— Իսկ հիմա ո՞ւր է այդ Վարդան Ստեփանյանը։*

*— Հիմա՞, հիմա նա խաղաղ աշխատանքի մարդ է, ֆիզիկայի գծով գիտական աշխատող է ակադեմիայում...*

*Ուսուցչուհու աչքերը փայլում էին հպարտությամբ։ Ծովիկը, չգիտես ինչու, հիշեց իր մորը։ Մայրն էլ այդպես էր լինում, երբ խոսում էր ինժեներ տղայի մասին...*

*Մաթևոսյանը խոնարհվելով դեպի աղջիկը, համարյա շշնջալով ավելացրեց.*

*— Դու տեսնո՞ւմ ես՝ ի՛նչ մեծ է իմ ընտանիքը։ Իսկ ընտանիքում երբեմն անախորժություններ էլ են պատահում... Այսուհետև դու խելոք կլինես, լավը կլինես...*

*Մաթևոսյանի գնալուց հետո Ծովիկն սկսեց մտածել։ Մեծ, մեծ փոփոխություն է կատարվել իր մեջ։ Ինչքա՜ն բան սովորեց ինքն այդ օրը։ Իսկ որ ամենագլխավորն է, Ծովիկը հասկացավ ճշմարտությունը. գեղեցիկ ճշմարտությունն այն ընտանիքի մասին, որը կոչվում է «Դպրոց»...։*

# ՄԻ ԴԵՊՔ ՄԵԾ ԿՅԱՆՔԻՑ

(Ստ. Շահումյանի մասին գրած հուշերից)

Վ. ՄՌԱՎՅԱՆ

*Հոկտեմբերյան Մեծ ռևոլյուցիան ժողովրդական լայն մասսաներին հնարավորություն տվեց շուտ վերջացնել պատերազմը: «Իշխանությունը Սովետներին» լոզունգը և կալվածատերերի հողերի բռնագրավումը ալեկոծել էր զինվորական գորշ շինել հագած մարդկանց սրտերը, յուրաքանչյուրը ցանկանում էր անձնական մասնակցություն ունենալ այդ մեծ ճակատամարտում: Կովկասյան ճակատից էշելոնները շարժվում էին դեպի Ռուսաստան...*

*Պարտիայի Անդրկովկասյան երկրային կոմիտեի հրավերով ընկեր Շահումյանը 1918 թվականի հունվարի 6-ին Բաքվից մեկնեց Թիֆլիս:*

*Հենց այդ օրը, Գանձակից ոչ հեռու, փոքրիկ Շամխոր կայարանում, տեղի ունեցան արյունալի դեպքեր, որոնք Անդրկովկասի ռևոլյուցիայի պատմության մեջ մտան «Շամխորի իրադարձություններ» անունով:*

*Ադրբեջանի մուսավաթական բանդաները, մենշևիկների, էսեռների, դաշնակների և մուսավաթականների կողմից ղեկավարվող Անդրկովկասյան կոմիսարիատի օգնությամբ բանդեցին և արգելափակեցին երկաթուղին, որպեսզի զինաթափ անեն ռևոլյուցիոն զինվորներին, որոնք հաղթական Հոկտեմբերյան ռևոլյուցիային օգնության էին գնում:*

*1918 թվականի հունվարի լույս 7-ի պարզկա գիշերը, երբ հոգնած զինվորները հանգստանում էին և մտածում ինչքան հնարավոր է շուտ վերադառնալ Ռուսաստան, լսվեցին դավաճանական կրակոցներ: Դա շատ անսպասելի էր: էշելոններն աննպաստ պայմանների մեջ ընկան: Սկսվեց արյունահեղ ու ծանր մի կռիվ: Գնացքները բոցավառվեցին: Անծանոթ վայրում, թշնամու օղակով շրջապատված էշելոնները զինաթափվեցին: Հոսեց ռևոլյուցիոն զինվորների արյունը:*

*Անդրկովկասյան կոմիսարիատի օգնությամբ մուսավաթական բանդան զինվում էր: Նրանց ձեռքն անցավ հարուստ ավար՝ հրացաններ, փամփուշտներ, գնդացիրներ և թնդանոթներ: Մուսավաթական ղեկավարները տեղում ղեկավարում էին այդ նողկալի ակտը:*

*Այն գնացքը, որով ընկեր Շահումյանը գնում էր Թիֆլիս, առավոտյան կանգ առավ Գանձակ կայարանում: Ճանապարհը դեպի Թիֆլիս փակված էր: Դեռևս ծխում էին վագոնները Շամխոր կայարանում, դեռևս լսվում էին հատուկենտ կրակոցներ:*

*Ճակատից վերադարձող առանձին զինվորներ շարունակում էին քաջաբար պաշտպանել իրենց ռևոլյուցիոն պատիվը:*

*Գանձակ կայարանում գործող մուսավաթականների ղեկավարներն իմացան, որ Շահումյանը գտնվում է գնացքում և խորամանկորեն առաջարկեցին նրան շոգեքարշով գնալ Շամխոր: Շահումյանը համաձայնեց, քանի որ ուզում էր տեղում ծանոթանալ դեպքերին: Սակայն երբ զինված մուսավաթականները շոգեքարշ բարձրացան, Շահումյանը հրաժարվեց մեկնել: Մուսավաթականներն սկսեցին սպառնալ: Այլևս չէր կարելի մնալ վագոնում և անհրաժեշտ էր, որ ընկեր Շահումյանը հեռանա այդտեղից: Բայց կայարանը մուսավաթականների ձեռքում էր: Ադրբեջանական զորամասը՝ նույնպես:*

*Ընկեր Շահումյանը մի զինվորի հանձնարարեց անցնել հայկական թաղամաս և հաղորդել Մռավյանների ընտանիքի անդամներին իրեն սպառնացող վտանգի մասին: Նա անհրաժեշտ էր համարում փոխադրվել քաղաքի հայկական մասը:*

*Նույն օրը, առավոտյան մեր դուռը ծեծեցին: Ես դուռը բաց արեցի և տեսա անծանոթ մի զինվորի: Նրա խոսելուց պարզվեց, որ վրացի է: Այդ ժամանակ դուրս եկավ Ասքա-*

նազ Մռավյանը։ Զինվոր ընկերը նրան հայտնեց, որ պետք է շտապ կազմակերպել ընկեր Շահումյանի հեռանալը վագոնից։ Նա հայտնեց նաև իր կարծիքը, թե ինչպես պետք է մոտենալ վագոնին, որպեսզի չնկատեն։ Զինվորի գնալուց հետո մենք անմիջապես դուրս եկանք տնից։

Ադրբեջանական մասով կայարան գնալը կապված էր մեծ ռիսկի հետ։

Մուսավաթական բանդաները անպատիժ կերպով կողոպտում և սպանում էին բոլոր նրանց, ովքեր ադրբեջանցի չէին. հատկապես հայերին։ Ստեփան Շահումյանին ազատելու գործը հանձնարարել որևէ մեկին, Ասքանազը չէր կարող և չէր ցանկանում։ Դրա համար էլ որոշեց մենակ գնալ կայարան։

Մենք իջանք դեպի քաղաքի ադրբեջանական և հայկական մասերը բաժանող կամուրջը։ Ինձ Ասքանազն հանձնարարեց մնալ կամրջի մոտ։ Պայմանավորվեցինք, որ եթե մեկ կամ մեկ ու կես ժամից հետո նա չվերադառնա Շահումյանի հետ, մենք պետք է ձեռք առնենք անհրաժեշտ միջոցներ նրանց վիճակը պարզելու համար։ Անցնելով կամուրջը, Ասքանազը նստեց կոնկան և գնաց կայարան։

Անցան րոպեներ, որոնք ժամեր թվացին ինձ։

Ասքանազն ինձ խիստ պատվիրել էր՝ ոչ ոքի չասել Շահումյանի կայարանում գտնըվելու և քաղաքի հայկական մասը փոխադրվելու մտադրության մասին։ Թե չէ թըշնամու լրտեսները կիմանային։ Անցնում է մեկ ժամ, իսկ նրանք չկան։ Կամուրջին են մոտենում ուրիշ ընկերներ, նվիրված մարտական բարեկամներ։ Նրանք նկատում են իմ հուզմունքը։ Ես չեմ դիմանում և հաղորդում եմ նրանց ամեն ինչ։ Նրանք որոշում են քաղաքի հայկական մասի ներքին ռայոնով, տափաստանով թափանցել կայարան և եթե պահանջվի, ուժով ազատել ընկեր Շահումյանին։ Բայց այդ պահին ինչ-որ մեկը բացագանչեց՝ «Կարծես թե նրանք են»։ Իսկապես, հեռվում երևաց մի կառք։ Ահա մոտեցավ կառքը։ Նրա մեջ են՝ ընկեր Շահումյանը և Ասքանազը։ Կառքը կանգնեց կամրջի ծայրին՝ քաղաքի ադրբեջանական մասում։ Մենք շունչներս պահած սպասում ենք։



ՍՏԵՓԱՆ ՇԱՀՈՒՄՅԱՆ

Ուզում ենք վազել դեպի կառքը, սեղմել խիզախ ղեկավարի ձեռքը։ Իսկ Շահումյանն ու Ասքանազը ինչ-որ բանի մասին հանգիստ զրուցելով անցնում են կամուրջը և գալիս մեր կողմը։ Նրանք ընկնում են ընկերների ու բարեկամների օղակի մեջ։ Սրտաբուխ ողջույններ։ Շահումյանը ժպտում է, իսկ Ասքանազը հուզված է. նրա դեմքին էլ հաղթական ժպիտ կա։

Մի քանի րոպե հետո երկուսն էլ բարեկամների ուղեկցությամբ գնում են դեպի Դոնդուկովյան (այժմ Շահումյան) փողոցի վրա գտնվող մեր տունը։

Այստեղ եղբայրս՝ Ասքանազ Մռավյանը ոգևորությամբ պատմում էր, թե ինչպես նա անցավ ադրբեջանական մասով, որտեղ զինված բանդաները հեղեղում էին քաղաքը։ Կայարանում նույն պատկերն էր։ Կայարանի շենքի միջով կառամատույց դուրս գալը ոչ մի միտք չուներ. կկասկածեին և սկսած գործը կտապալվեր։ Դրա համար էլ նա որոշում է կայարանի հակառակ կողմից մոտենալ գնացքին։ Վարձած կառքը նա թողնում է կայարանից հեռու, մոտենում է գնացքի այն վագոնին, որտեղ գտնվում էր ընկեր Ստեփանը։ Նրանք ամուր սեղմում են միմյանց ձեռքը և արագ դուրս են գալիս վա-

գոնից։ Ասքանազը կառապանին խնդրում է գնալ խուլ, դատարկ փողոցներով։ Եվ այդպես նրանք բարեհաջող տեղ են հասնում։

Ինչպես հետո մեզ հայտնի դարձավ, ընկեր Շահումյանի քաղաքի հայկական մասը գնալուց մի ժամ հետո, մուսավաթականները գլխի են ընկնում և հեռախոսով հարցնում են դաշնակներին, թե արդյոք հայկական մասո՞ւմ է գտնվում Շահումյանը և ո՞ւմ մոտ է իջևանել։ Բայց արդեն ուշ էր։ Շահումյանին այլևս վտանգ չէր սպառնում։

Շուտով մեր փոքրիկ բնակարանը լցվեց մարդկանցով։ Մեկը մյուսի հետևից գալիս էին ընկերները և բերում հաղորդումներ Շամխորի իրադարձությունների մասին։

Շամխորում կանգ առած գնացքների զինաթափման ծանր լուրը մտածմունքի մեջ գցեց ընկեր Շահումյանին։ Չկտրվելով իր մտքերից, նա երկար նայում էր թիթեղյա վառարանի մեջ բորբոքվող կրակին։ Մենք լուռ կանգնած էինք նրա շուրջը և սպասում էինք նրա խոսքին։ Մենք չէինք ցանկանում խանգարել նրա մտածողության ուղղությունը։ Ընկերներից մեկն իր հուզմունքը ցույց չտալու համար մեջքով շուռ եկավ դեպի մեզ և սկսեց նայել բակի կողմը։

Շահումյանը ձեռքը դրած ճակատին, կարծես թե կենտրոնացնում էր իր մտքերը։ Հանկարծ նա բարձրացավ տեղից և իր առույգ, ոչ մի կասկած չթողնող տոնով ասաց. «Նու, ինչ արած, ընկերներ. չպետք է վհատվել, դա մեզ համար դաս կլինի։ Մեր հետագա պայքարը կոնտրռևոլյուցիայի դեմ թնդանոթների և գնդացիրների լեզվով կլինի»։ Սենյակում բոլորը թեթև շունչ քաշեցին։

Այս ասելով, նա ուղղվեց. կարծես թե պատրաստվում էր բռնել կոնտրռևոլյուցիայի կոկորդից։ Նրա կապույտ աչքերը վառվում էին։

Մեզ համար ամեն ինչ պարզ դարձավ. նրա խոսքերը ուղղություն էին տալիս մեր մոտակա պարտիական աշխատանքին։

Դրանից հետո Շահումյանը տեղի պարտիական ընկերների օգնությամբ Ղազախի և Լոռու սարերով ու անտառներով, մեծ դժվարություններ հաղթահարելով հասավ Թիֆլիս։

Այնտեղ նա ստացավ ժողկոմսովետի կողմից ուղարկված մանդատը Անդրկովկասի գործերի արտակարգ կոմիսար նշանակվելու մասին։ Մանդատը Մոսկվայից Թիֆլիս էր հասցրել լեգենդար հերոս Կամոն։

# ԱՅՍՏԵՂ ԱՊՐԵԼ Է ՇԱՀՈՒՄՅԱՆԸ

*ՀՐ. ԲԱԳՐԱՋՅԱՆ*

Ստեփանավանի կենտրոնում կա մի փոքրիկ տնակ, որտեղ 1899 թվականից մինչև 1912 թվականը, ընդմիջումներով, ապրել է Ստեփան Շահումյանը։

Այդ տունը հիմա տուն-թանգարան է։ Այստեղ հավաքված փաստաթղթերն ու էքսպոնատները պատմում են ժողովրդի երջանկության համար պայքարող մարտիկի մասին։

Ահա հասարակ տնակի մի լուսանկար։ Այդ տնակում ծնվել է Ստեփան Շահումյանը։ Նկարի կողքին փակցված են Շահումյանի ծնողների ու քույրերի լուսանկարները։

1899 թվականին փոքրիկ Ստյոպան պատրաստվում է ընդունվելու Թիֆլիսի ռեալական ուսումնարանը։ Սկզբում նա սովորում է նախապատրաստական դասարանում և ավարտում փայլուն գնահատականներով։

Տուն-թանգարանում ցուցադրված են Ստեփանի գովասանագրերը, որոնցից մեկում գրված է. «Տրվում է աշակերտ Ստեփան Շահումյանին ուսման մեջ փայլուն առաջադիմության ու աշխատասիրության համար»։

Մի ուրիշ լուսանկարում պատկերված է տասներկու տարեկան Ստ. Շահումյանը՝ ռեալական դպրոցի համազգեստով. աշխույժ աչքերով, կարճ կտրած մազերով մի տղա։

Շահումյանը համեստ ու լավ ընկեր էր։ Օգնում էր ետ մնացող աշակերտներին. պարտաճանաչ էր, տնային աշխատանքները բարեխղճորեն կատարող։ Ապակու տակ պահպանված են ռեալական ուսումնարանի աշակերտ Ստ. Շահումյանի աշխատանքները։ Դրանք զանազան օրնամենտներ են,



Ստ. Շահումյանի տուն-թանգարանը Ստեփանավանում։
Ֆոտո՝ Հ. ՀԵՐԵՔՅԱՆԻ

որոնք իրենց բարդությամբ զարմացնում են այցելուներին։

Տուն-թանգարանի սենյակներից մեկը վերականգնված է այն ձևով, ինչպիսին եղել է Շահումյանի ժամանակ։

Սենյակում դրված են նրա փայտե մահճակալը, գրասեղանը, գրերի պահարանը։ Պատերին փակցված են նրա մեծ դիմանկարները և մի լուսանկար, որը պատկերում է Ստ. Շահումյանին իր փոքրիկ տղայի հետ։ Գրասեղանին դրված է գրասարքը, որն օգտագործել է Շահումյանը։ Այդ նույն սենյակում պահվում են նրա բլոկնոտները, փոքրիկ փողկապը և այլ իրեր։

Ամենաուշագրավ էքսպոնատը խմորից պատրաստած շատ փոքրիկ կոշիկն է։ Դա պատրաստել է Շահումյանը 1912 թվականին Աստրախանի բանտում և որպես նվեր ուղարկել քրոջը։ Այդ փոքրիկ կոշկի ներբանի վրա Ստ. Շահումյանը մակագրել է. «Վիլուշին, Աստրախան 1912 թվական»։

Ստ. Շահումյանը լավ էր տիրապետում հայերենին ու ռուսերենին։ Նա հայ աշխատավորների շրջանում տարածելու համար թարգմանում էր մարքսիզմի կլասիկների աշխատությունները և ռուս գրականության լավագույն նմուշները։ 1901 թվականին Ռիգայի պոլիտեխնիկական ինստիտուտում սովորելու ժամանակ Շահումյանը հայերեն թարգմանեց Մ. Գորկու «Մի անգամ աշնանը» պատմվածքը։ Այս գրքույկը պահպանվում է թանգարանում։ Նույն սենյակում ցուցադրված են Մարքսի և Էնգելսի մի շարք աշխատությունները, որոնք հայերեն թարգմանել է Ստ. Շահումյանը։

Մեծ ռևոլյուցիոները ծանոթ էր իր ժամանակի հայ առաջավոր գրողներին ու բանաստեղծներին։ Նա շատ էր սիրում պրոլետարական բանաստեղծ Հ. Հակոբյանին։ Թանգարանում պահվում են այն փաստաթղթերը, որոնք պատմում են այս երկուսի ջերմ բարեկամության մասին։

Այստեղ ցուցադրված են նաև Ստ. Շահումյանի նամակները՝ բանտից հասցեագրված հարազատներին։ Ինչպիսի՜ ջերմություն, ինչպիսի՜ հոգատարություն հարազատների նկատմամբ։ Լուսանկարներից մեկը



Ստ. Շահումյանը ընտանիքի հետ

պատկերում է Շահումյանին՝ երեխաների ու կնոջ հետ:

Ստ. Շահումյանը Անդրկովկասում ռևոլյուցիոն մեծ աշխատանք է կատարել: 1903 թվականին նա ժնևում առաջին անգամ անձամբ ծանոթացավ Լենինի հետ: Շահումյանը միշտ նամակագրական կապ էր պահպանում Լենինի հետ: Թանգարանում ցուցադրված է Լենինին ուղարկած նամակի լուսանկար-պատճենը:

Մեծ Լենինի բարեկամությունը միշտ լուսավորում էր Շահումյանի կյանքի ուղին և նրան առաջնորդում դեպի պայքար:

1918 թվականին Շահումյանը Բաքվի ժողովրդական Կոմիսարների Սովետի նախագահն էր. բայց Սովետական իշխանությունը Բաքվում երկար չդիմացավ: Թյուրք, անգլիացի և գերմանական իմպերիալիստներին հաջողվեց մուսավաթների, դաշնակների ու մենշևիկների օգնությամբ ժամանակավորապես հաղթել: Նրանք բանտարկեցին Բաքվի 26 կոմիսարներին ու գնդակահարեցին:

Ստ. Շահումյանը և իր ընկերները՝ Ջափարիձեն, Մ. Ազիզբեկովը, Վ. Ֆիոլետովը և ուրիշներ մնան «Կեցցե՜ կոմունիզմը» բառերը շուրթերին:

Տուն-թանգարանում կան նկարներ և փաստաթղթեր, որոնք ցույց են տալիս մեծ ռևոլյուցիոների կյանքի վերջին տարիները:

---

## ՍՏ. ՇԱՀՈՒՄՅԱՆԻ ՆԱՄԱԿԸ ԵՐԵԽԱՆԵՐԻՆ

**Սիրելի երեխաներ**

Ինչպե՞ս եք անցկացնում ժամանակը, ինչպե՞ս են ձեր պարապմունքները: Քո բացիկը, սիրելի Սուրիկ, ստացա: Գնո՞ւմ եք արդյոք թատրոն: Դա անհրաժեշտ է, երեխանե՛ր: Բելինսկին իր ինչ-որ մի հոդվածում հարցնում է. «Գնո՞ւմ եք արդյոք թատրոն, օ՜, գնացեք թատրոն, գնացեք և, եթե հնարավոր է, մեռեք այնտեղ»: Նա շատ տարվող մարդ էր. ես, իհարկե, ոչ ոքի խորհուրդ չեմ տալիս թատրոնում մեռնել, բայց գնալ անհրաժեշտ է:

Այն բոլորը, ինչ բեմադրվում է կլասիկներից, գոնե այդ անհրաժեշտ է տեսնել. Շեքսպիրից, Շիլլերից, Իբսենից, Օստրովսկուց, օպերայից բոլորը և այլն:

Նոր պիեսները գնացեք տեսեք իմացողների խորհրդով:

Աշխատեցեք ազատ ժամանակ մարմնամարզությամբ զբաղվել, երևակայեցեք, ես օրը երկու անգամ 10—15 րոպե կատարում եմ և շատ գոհ եմ: ժամանակ գտնել միշտ կարելի է: Քեզ էլ անհրաժեշտ է այդ, սիրելի Մա՛նյա: Համբուրում եմ ձեզ բոլորիդ՝ Սուրենին, Մանյային, Լյովային և Սերյոժային:

*ՁԵՐ ՊԱՊԱ*

*1917 թ. փետրվարի 7-ին*

*Սարատով*

---

## ՍՏԵՓԱՆ ՇԱՀՈՒՄՅԱՆԻՆ

*ՍԻԼՎԱ ԿԱՊՈՒՏԻԿՅԱՆ*

Մեր հինավուրց պատմության մեջ,
Մեր բարձրագահ Հայաստանում
Դու՝ ամենից բարձր ու մեծ
Դու՝ ամենից պայծառ անուն:
Այդ դո՛ւ էիր նշմարեցիր
Փրկության նոր, հզոր ուղին,
Մեր ճանապարհը կապեցիր
Լենինի մեծ ճանապարհին:

ժողովուրդը մեր տառապած
Գնաց ազնիվ քո հետքերով.
Հաղթեց դրոշդ փառապանծ,
Մեր Շահումյան, մեր նո՜ր հերոս:
Ու հավիտյան երախտապարտ
Քեզ են հիշում ծեր ու մանուկ
Քո նորաշեն, քո նորազարդ,
Քո հայրենի Հայաստանում...

# ՀԱՐՅՈՒՐԵՐՈՐԴ ՀԻԵՐՈԳԼԻՖԸ

Ս. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ

Նկ. Կ. ՔՈԹԱՆՋՅԱՆԻ

## 1

Ուրախ էր Մեյ Լին։ Եվ ինչպե՞ս ուրախ չլիներ։ Այսօր նա առաջին անգամ ինքն էր ստորագրել գյուղի ավագի մոտ, նրա մատյաններից մեկում։ Դա հասարակ բան չէ։ Մեյ Լին իր ամբողջ կյանքում խնդրել է, որ իր փոխարեն ուրիշներն ստորագրեն, իսկ այսօր, խնդրեմ, նա արդեն ստորագրում է։

Գնում է Մեյ Լին փողոցով և մտքից չի հեռանում քիչ առաջ պատահածը։ Նա մտել էր ավագի մոտ և ասել.



— Սա մարդու հիերոգլիֆն է, սա՝ ջրի...

— Ո՞ւր է, ո՞ւր է անիծյալ Ցոյը, ո՞ւր է նա։

Ավագը զարմացել էր։ Ո՞ր Ցոյի մասին է խոսքը։ Մի՞թե Մեյ Լին գյուղի նախկին ավագին է հարցնում։ Չէ՞ որ նրան ժողովրդական իշխանությունը վաղուց դուրս է վռնդել։

— Մի նստիր, Մեյ Լի՛,— ասաց ավագը,— նստիր և պատմիր, թե ի՞նչ է պատահել քեզ։ Դու գիտե՞ս, որ Ցոյը չկա։

— «Չկա՜, չկա՜». ես էլ գիտեմ, որ չկա։ Թե այստեղ կլինե՜ր... Ես նրան ցույց կտայի...

Գյուղում բոլորը հարգում էին Մեյ Լիին։ Նրա միակ տղան տասնհինգ տարի ժողովրդական բանակում է եղել։ Հիմա էլ Պեկինում է, գործարանում է աշխատում։ Վան Յուն շատ փորձեց պառավ մորն իր մոտ տանել՝ ոչինչ չստացվեց։ Մեյ Լին, որ ամբողջ կյանքում հարավային այս գյուղում էր ապրել՝ չէր ուզում այժմ հեռանալ։ Մեյ Լին նստեց աթոռի վրա և ծանր շնչելով ասաց.

— Լավ, Չժա՛ն, թուղթ տուր ինձ, թուղթ ու վրձին տուր։

— Ի՞նչ պիտի անես, Մեյ Լի՛։

— Ինչ պիտի անե՞մ։ Պիտի ստորագրեմ, իմ անունը պիտի գրեմ։

— Մի՞թե դու գրել կարող ես,— զարմացած հարցրեց Չժանն ու տեսնելով պառավի ինքնավստահ ժպիտը, նրա առջև դրեց մի մեծ մատյան։— Ստորագրիր, թե կարող ես, ստորագրիր այստեղ։

Մեյ Լին վրձինը ոսկրոտ ձեռքով թաթախեց տուշի մեջ և սկսեց գրել։ Նա այդ անում էր դանդաղ, հանդիսավորությամբ, ամեն մի գիծը քաշելուց հետո նայելով ավագին։ Կարծես դրանով ուզում էր ասել. «Տեսնո՞ւմ ես. իսկ դու չէիր հավատում»։ Երբ նա քաշեց բոլոր հորիզոնական և ուղղահայաց գծերը, դրեց փոքրիկ սեպերը, նույն հանդիսավորությամբ վրձինը վերադարձրեց և հաղթականորեն նստեց տեղը։ Չժանը շատ էր զարմացել։

Մեյ Լիի մտքից չի հեռանում նրա զարմացած կերպարանքը։ «Հա՛-հա՛-հա՛... զարմանում է, իսկ ի՞նչ կասեր անպիտան Ցոյը»...

Երերալով քայլում էր Մեյ Լին տարված իր մտքերով. իսկ այդ մտքերը շատ հեռու էին տանում։

## 2

*Բաո Ջանը շատ փնտրեց Մեյ Լիին, բայց չգտավ. ո՞ւր պիտի գնացած լինի։ Տղայից հեռագիր է ստացել երևի։ Բաո Ջանը այսօր շուտ է եկել։ Բայց նա խղուր չէ, որ շտապել է։ Չէ՞ որ Մեյ Լին խոստացել է բան պատմել։*

*— Է, ի՞նչ կա որ, մի քիչ կսպասեմ. ուր որ է կգա,— մտածեց նա և մտնելով պարտեզ, սկսեց սալաթի ածուները մաքրել մոլախոտից։*

*Մոտ մի տարի է, ինչ պիոներ Բաո Ջանը կապվել է միայնակ պառավի հետ՝ օգնում է նրան տնային գործերում, նրա համար նամակներ է գրում։*

*Նրանց մտերմությունն սկսվեց այսպես։*

*Մի անգամ Ջանը դպրոցից վերադառնալիս հանդիպեց Մեյ Լիին, որն իր ձեռնափայտին կռթնած, դուրս էր եկել փողոց։ Նրա ձեռքին մի ծրար կար։ «Երևի տղայից նամակ է ստացել» մտածեց Բաո Ջանը և մոտենալով նրան հարցրեց.*

*— Տատի՛, ո՞ւր այդպես։*

*Մեյ Լին ցույց տվեց ծրարը։*

*— Նամակ եմ ստացել Վան Յուից, տանում եմ՝ ուսուցիչը կարդա։*

*Ուսուցիչը ապրում էր գյուղի կենտրոնում. պառավը պիտի ահագին ճանապարհ գնար։*

*— Ուզո՞ւմ ես՝ ես կկարդամ, տատի՛։*

*— Իսկ դու կարո՞ղ ես կարդալ,— հարցրեց Մեյ Լին։*

*— Իհարկե կարող եմ. ես արդեն չորրորդ դասարանում եմ սովորում։*

*Մեյ Լին անվստահորեն ծրարը մեկնեց նրան։ Ջանը բաց արեց ծրարը և սկսեց արագ կարդալ։ Նա դեռ կեսը չէր կարդացել, երբ պառավը ընդհատեց նրան.*

*— Դե լավ, կարող ես։ Գնանք տուն, պատասխանն էլ կգրես։*

*Նրանք գնացին պառավի ֆանձը։ Նամակը լրիվ կարդալուց հետո Ջանը պայուսակից մի թերթ մաքուր թուղթ հանեց և գրեց պատասխանը։ Մեյ Լին թելադրում էր և ուշադիր հետևում Ջանի փոքրիկ մատներին, որոնք արագ շարժվում էին թղթի վրա։ «Մի սրան տես, մի մատնաչափ հագիվ լինի, բայց ինչքան արագ է գրում»։ Ու Մեյ Լին մտածում էր իր մասին։ Յոթանասուն տարի ապրեց աշխարհում և յոթ վանկ գրել չսովորեց։ Դե ո՞վ աղքատին այն ժամանակ ուսում կտար. իսկ հիմա արդեն ուշ է։ Մի՞թե յոթանասուն տարեկան հասակում մտածում են այդ մասին։*

*Ջանն առաջին անգամն էր լինում Մեյ Լիի ֆանձում։ Տեսնելով որ պառավը ջուր չունի՝ նա ջուր բերեց, հետո ավլեց պատշգամբը։ Մեյ Լիին շատ դուր եկավ Ջանը։ Նա մի ափսե գետնանուշ դրեց Ջանի առջև, բայց Ջանը միայն մի բուռ վերցրեց։ Այնուհետև Ջանը հաճախ էր այցելում պառավին, օգնում նրան, կարդում նրա նամակները։*



Նա փայտի կտորով փորձեց դրանք նկարել...

*Մի օր էլ նա մտավ պառավի ֆանձը և դեռ շեմքից ձայն տվեց.*

*— Տատի՛, ուզո՞ւմ ես, ես քեզ կարդալ սովորեցնեմ։*

*Պառավը մի պահ չհասկացավ, թե ինչ է ուզում ասել Ջանը, իսկ հետո հանգիստ ասաց.*

— Չէ, որդի՛ս, դա իմ բանը չէ, ես չեմ կարող։

Ջանը բացատրեց, որ հիմա Չինաստանում սովորում են բոլորը. թե՛ մեծերը, թե՛ փոքրերը։ Սովորելու են նույնիսկ նրանք, ովքեր տանից չեն կարող դուրս գալ։ Նրանց հետ պարապելու են փոքրիկ ուսուցիչները՝ պիոներները։ Բայց Մեյ Լին չէր համաձայնում։ «Մի՞թե հնարավոր է այս հասակում» ասում էր նա։

— Բայց, տատի՛, դա բոլորովին էլ դժվար չի.— համառում էր Ջանը,— ա՛յ, տե՛ս, սա մարդու հիերոգլիֆ է, սա՝ ջրի, իսկ սա էլ արևինն է։

Ջանը գրած թուղթը մեկնեց Մեյ Լին։ Պառավը մի կողմ գցեց այն և խստորեն ասաց.

— Ո՛չ, ո՛չ, իմ բանը չէ դա։ Դու ավելի լավ է օգնես ինձ հավերին ներս անենք. անիծվածները պարտեզը քանդեցին։

3

Մեյ Լին բոլորովին էլ միտք չուներ այդ թուղթը վերցնելու։ Ջանի գնալուց հետո տեսնելով շեմքի մոտ ընկած թղթի կտորը, վերցրեց որ զամբյուղը գցի, պատահմամբ նկատեց Ջանի գրած երեք հիերոգլիֆը։ Թուղթը ձեռքին նա այդպես էլ կանգնած մնաց. ասես ուզում էր մի բան վերհիշել։ «Սա մարդու, սա՝ ջրի, իսկ սա արևի հիերոգլիֆն է» հիշեց նա Ջանի խոսքերը։ «Իսկ ո՞րն է մարդունը,— անցավ նրա մտքով,— իհարկե սա, տես ինչքա՜ն էլ մարդու նման է։ Իսկ այս երկուսից ո՞րն է արևինը»։

Նա հիշողությունը լարեց, բայց այդպես էլ չկարողացավ ջրի և արևի հիերոգլիֆը իրարից ջոկել։ Նա թուղթն այլևս դեն չնետեց. տարավ դրեց թարեքին, Վան Յունի տանը մնացած գրքերի վրա։ Քիչ հետո, երբ նա պարտեզում քաղհանում էր կաղամբի և սալաթի ածուները, նորից հիշեց հիերոգլիֆների մասին։ Նա փայտի կտորով փորձեց դրանք նկարել թաց հողի վրա։ Շատ չարչարվելուց հետո, մի կերպ դուրս բերեց մարդու հիերոգլիֆը, իսկ մյուսները մոռացել էր։ Ոչ թե սովորելու ցանկությունից, այլ զուտ հետաքրքրությունից դրդված նա գնաց և թղթի կտորը բերեց պարտեզ։ Տեսնե՞ս ճիշտ է նկարել գոնե մարդու հիերոգլիֆը։



— Ծանր էր առաջ կյանքը, շատ ծանր...

Ճիշտ էր։ Մեյ Լին մի անսովոր ուրախություն զգաց։ Եվ այստեղից էլ սկսվեց ամեն ինչ։ Հաջորդ օրը, երբ Ջանը եկավ նրա մոտ, Մեյ Լին ցույց տալով հիերոգլիֆները, ասաց.

— Ա՛յ, սա մարդու հիերոգլիֆն է։ Իսկ սրանցից ո՞րն է արևինը, որը՝ ջրինը։

Ջանը հասկացավ, որ պառավը սովորել է ուզում։

Այդ օրվանից փոքրիկ ուսուցիչը ամեն օր լինում էր պառավի տանը։ Օրեցօր ավելանում էր Մեյ Լիի սովորած հիերոգլիֆների թիվը։ Մի օր պառավը Ջանին ասաց.

— Ա՛յ, երբ ես կիմանամ հարյուր հիերոգլիֆ, այն ժամանակ ես քեզ իմ կյանքից մի դեպք կպատմեմ։

Հետո գուցե նա իր խոստումը մոռացավ.

բայց Ջանը չէր մոռանում։ Այսօր պարտեզում սալաթը քաղհանելիս, նա անընդհատ այդ մասին էր մտածում։ Չէ՞ որ երեկ պառավին որպես դաս տվել է հարյուրերորդ հիերոգլիֆը։ Իսկ եթե նա արդեն սովորել է դասը, ուրեմն պիտի պատմի իր կյանքի այդ հետաքրքիր դեպքը։ Բայց պառավը բոլորովին էլ չէր մոռացել իր խոստումը։ Տուն հասավ թե չէ, մտավ պարտեզ. այդպես էլ գիտեր. Ջանն այնտեղ էր։

— Ինչո՞ւ ես այսքան շուտ եկել, Ջա՛ն,— հարցրեց Մեյ Լին նկատելով նրան։

Ջանը պատասխանի փոխարեն հարցրեց.

— Իսկ դու դասդ սովորե՞լ ես։

Մեյ Լին ժպտալով շոյեց Ջանի գլուխը.

— Կպատմեմ, այսօր կպատմե՜մ, ա՛յ դու անհամբեր։

Նրանք ֆանձը չգնացին։ Կանեփների խիտ ստվերում Մեյ Լին սկսեց իր պատմությունը։

4

Ծանր էր առաջ կյանքը, շատ ծանր։ Ամեն ինչ մանդարինների ու գյուղի ավագների ձեռքին էր գտնվում, իսկ գյուղացիները ստրուկ էին, կույի։

Մեյ Լիի ամուսինը՝ Լյան մի կտոր հողամաս ուներ, մի փոքրիկ կտոր։ Ամբողջ օրը մանդարինի արտում աշխատելուց հետո, նրանք երեկոները մշակում էին իրենց փոքրիկ հողակտորը։ Բայց ինչքան էլ փոքր լիներ նրանց արտը, էլի մի բան ստանում էին, մի կերպ կերակրում էին իրենց փոքրիկ Վան Յուին։ Սակայն ե՞րբ է եղել, որ հարուստները թողնեն աղքատը հանգիստ ուտի իր չոր հացը։

Մի օր էլ, հունիսի սկզբին էր այդ, Մեյ Լին և Լյան տեսան, որ իրենց արտը խանձըվում է։ Դե, բրինձն անընդհատ ջրի մեջ պիտի աճի. իսկ ջուր չկար։ Սիցզյան գետից հանված ամբողջ ջուրը ջրանցքով գնում էր դեպի մանդարինի հողերը։ Իսկ ինչքա՞ն ջուր կպակասի ջրանցքից, եթե մի ափի չափ հողակտոր ջրես։ Մանավանդ որ այդ ջրանցքն էլ բացել են Լյան ու նրա նման հազարները։

Տեսնելով որ տարվա պտուղը կորչում է, Լյան ու Մեյ Լին գիշերը ջուրը բաց արին իրենց արտի կողմը։ Առավոտյան Լյաին տարան մանդարինի մոտ։ Նրան այնքա՜ն մտրակահարեցին, այնքա՜ն ծեծեցին, որ հետևյալ օրը նա մեռավ։

Մեծ էր Մեյ Լիի վիշտը։ Ինչպե՞ս պիտի նա մեծացներ երկու տարեկան երեխային։ Միակ հույսն արտն էր։ Մեյ Լին ամեն օր երեկոները մանդարինի արտից վերադառնալիս աշխատում էր արտում, փոքրիկ Վան Յուին մեջքից կապած, որն այդպես էլ քնում էր մատները ծծելով։ Բայց արի ու տես, որ մանդարինը դեռ չէր բավարարվել։ Նա պահանջում էր, որ իրեն հասցրած վնասի դիմաց Մեյ Լին վճարի։

Մեյ Լիին կանչեց գյուղի ավագը։ Այդտեղ էր նաև մանդարինը, որ հսկայական մարմընով նստել էր փոքրիկ բամբուկե աթոռի վրա և հատիկ էր ուտում։

— Դու պետք է քո այս տարվա ամբողջ բերքը մանդարինին տաս,— ասաց Ցոյը, որին մանդարինը վերջերս դարձրել էր գյուղի ավագ,— դուք շատ վնաս եք հասցրել նրան, բայց մանդարինը բաշխում է մնացածը։

Հաստափոր մանդարինը գլխով արեց ու ժպտաց։

Մեյ Լին լուռ էր։ Ի՞նչ կարող էր անել նա, երբ ուժն էլ, իրավունքն էլ անխիղճ մարդկանց ձեռքին էր։

— Ա՛յ, այստեղ գրված է այդ մասին, կարդա և ստորագրիր,— ասաց ավագը Մեյ Լիին մի թուղթ մեկնելով։

Նա վերցրեց թղթի կտորը, նայեց նրա վրա գրված անծանոթ նշաններին և ամոթխած ասաց.

— Ես կարդալ չգիտեմ։

— Այդտեղ գրված է, որ դու քո այս տարվա բերքը տալիս ես ինձ, քո պարտքի փոխարեն,— ասաց մանդարինը,— այդպես չէ՞, Ցո՛յ։

— Այո, այդպես է գրված,— հաստատեց ավագը։

Մեյ Լին բութ մատը թաթախեց տուշի մեջ և դրեց թղթի վրա։ Դա փոխարինում էր ստորագրությանը։

Պառավը մի պահ ընդհատեց իր պատմությունը։

— Ա՜խ, թե ես կարդալ կիմանայի... գոնե այնքան, ինչքան հիմա գիտեմ,— ասաց նա վերջապես։

— Տատի՛, մի՞թե նրանք ամբողջ բերքը վերցրին,— հարցրեց Բաո Ջանը։

— Երանի չէր, որ այդպես լիներ, Ջա՛ն։ Մի տարվա բերքն ի՞նչ է որ, մենք մի կերպ քարշ կգայինք այդ տարի։ Ախր թղթի մեջ ուրիշ բան էր գրված եղել։ Դե՛, ես ոչ մի հիերոգլիֆ չէի ճանաչում, իսկ թղթում գրըված է եղել, թե ես ընդմիշտ հրաժարվում եմ իմ արտից։ Հիմա հասկանո՞ւմ ես, Ջա՛ն։ Նրանք ինձ խաբել էին, օգտվելով իմ անգրագիտությունից։

Ջանը շշմել էր։ Մի՞թե այդքան անխիղճ կլինեն, մի՞թե այդքան բացարձակ կթալանեն մարդուն։ Պառավը ոտքի ելավ։

— Գնանք, որդի՛ս, լավ է, որ դու այդ բոլորը չես տեսել, լավ է, որ այլևս այդ չի կրկնվելու։

Նա երերալով գնաց ֆանձ։ Փոքրիկ ուսուցիչ Բաո Ջանը հետևեց նրան։ Այդ օրը նա Մեյ Լիին սովորեցրեց հարյուրմեկերորդ հիերոգլիֆը։



# ԱՐԵՎԻ ՍԱՐԸ

(Չինական ժողովրդական հեքիաթ)

Նկ. Մ. ՍՈՍՈՅԱՆԻ

Ժամանակով երկու եղբայր կային, մեկը՝ մեծ, մյուսը՝ փոքր։ Մեծ եղբայրը ժլատ ու ագահ էր. անհամբեր սպասում էր, որ տիրանա հոր ամբողջ ժառանգությանը։ Ու երբ հայրը մեռավ, նա վճռեց խորամանկության դիմել։ Մի անգամ երեկոյան փոքր եղբորն ասաց.

— Եղբա՛յր, ժամանակն է, որ բաժանենք մեր հոր թողած ժառանգությունը։ Արի առավոտյան շուտ վեր կենանք ու գնանք վար անելու։ Ով շատ վարի, թող նա էլ տերը դառնա ժառանգությանը։ Միայն մի պայմանով. առավոտվանից ոչինչ չպետք է ուտենք։

Փոքրը միշտ լսում էր մեծին։ Հիմա էլ համաձայնեց։ Լույսը չբացված՝ մեծ եղբայրն արթնացավ։ Կինը նախաճաշ պատրաստեց ամուսնու համար։ Սա կուշտ կերավ, իսկ հետո արթնացրեց փոքր եղբորը։

— Դե՛, ես վեր եմ կացել։ Գնանք վարելու։

Դաշտ գնացին ու սկսեցին վար անել։ Մեծ եղբայրն արագ էր աշխատում, իսկ փոքրը սոված էր, և դժվարանում էր հասնել նրան։ Այնպես ստացվեց, որ ամբողջ ունեցվածքը հասավ մեծին, իսկ փոքրը դատարկաձեռն մնաց։

Փոքր եղբայրն ստիպված քաշվեց սարերը և բնակվեց քարանձավում։ Փայտ էր կտրում, վաճառում ու մի կերպ վաստակում իր օրվա հացը։

Մի անգամ դարձյալ գնացել էր անտառ՝ փայտ կտրելու։ Հանկարծ ծառի վրա կաչաղակի մի մեծ բույն տեսավ. մի ձող վերցրեց ու սկսեց բույնը քանդել։ Ներսից դուրս թռավ կաչաղակն ու խնդրեց.

— Բույնս մի՛ քանդիր, ես քեզ կտանեմ Արևի Սարը, որ գանձեր հավաքես։

— Ի՞նչ գանձեր,— չհավատաց փոքր եղբայրը։



— ...Ով շատ վարի, թող նա էլ տերը դառնա...

— Վաղը դու արևածագից առաջ արի այստեղ. հետդ էլ մի տոպրակ բեր։ Ես քեզ ցույց կտամ, թե այնտեղ ինչ գանձեր կան։

Մյուս օրը, փոքր եղբայրը մի տոպրակ վերցրեց ու կաչաղակի հետևից գնաց Արևի Սարը։

Երբ հասան սարի ամենաբարձր գագաթին, փոքր եղբայրը նայեց ու աչքերին չհավատաց. նրա դիմաց շաղ էին տրված ոսկու կույտեր, մարգարիտներ ու տեսակ-տեսակ թանկագին քարեր։ Տղան տոպրակը լցրեց գանձերով, շնորհակալություն հայտնեց կաչաղակին և տուն վերադարձավ։ Շուտով նա թողեց իր քարանձավը, մի լավ տուն շինեց ու սկսեց ուրախ կյանք վայելել։ Մեծ եղբայրն իմացավ, որ փոքրը հարստացել է և նախանձեց։ Մի մահակ վերցրեց, վազեց սարն ու սկսեց քանդել կաչաղակի բույնը։

Ներսից դուրս թռավ կաչաղակն ու խոստացավ մեծ եղբորը տանել Արևի Սարը։

— Բայց տես, հա՛, փոքր տոպրակ կվերցնես. այնպես, որ մի չափ բրնձից շատ չտանի,— խրատեց թռչունը։

Մեծ եղբայրը մտածեց, որ այդպիսի տոպրակը շատ փոքր կլինի և տուն գալուն պես կնոջը պատվիրեց, որ ամենամեծ սավանից պարկ կարի։

Մյուս օրը, լուսաբացին, մեծ եղբայրը կաչաղակի հետևն ընկավ ու գնաց Արևի Սարը։ Գանձերի կույտերը տեսնելուն պես, ամեն բան մոռացավ ու սկսեց արագ-արագ լցնել պարկը։ Բայց պարկը շատ մեծ էր և լցնելն այնքան երկար տևեց, որ երկնքում արդեն երևացին արևի առաջին ճառագայթները։

— Շո՛ւտ, փախչե՛նք,— ձայն տվեց կաչաղակը,— թե չէ արևը դուրս կգա ու քեզ կվառի։

Մեծ եղբայրը չլսեց. ուզում էր ավելի շատ գանձ տանի։ Ինչքան էլ կաչաղակը շտապեցրեց, ագահը չհեռացավ այդտեղից։

Արևը ծագեց, ագահ մարդուն տեսավ ու այրեց նրան։

Ծեր մարդիկ ասում են, որ միշտ այդպես է լինում. արևը չքավոր մարդուն երբեք չի վնասում, տաքացնում է և նվիրում իր ոսկու մի մասը։ Բայց երբ անկուշտ հարուստն ուզում է ամեն ինչ հափշտակել, տանել միայն իր համար, զայրացած արևը նրան այրում է։

Թարգմ. Գ. ՄԻՔԱՅԵԼՅԱՆ

## «ԺՈՂՈՎՈՒՐԴՆԵՐԻ ԲԱՐԵԿԱՄՈՒԹՅՈՒՆ»

Ս. ԻՍԱՀԱԿՅԱՆ
(Տեխնիկական գիտությունների թեկնածու)

Դրիսվյատի լիճը գտնվում է Արևմտյան Բելոռուսիայի, Լատվիայի ու Լիտվայի սահմանների հատման հանգույցում։ Լիճն առաջ պատկանելիս է եղել բարոն Օտտենհենին, որը թղթախաղում տարվել է այն բարոն Իկսկուլին։ Դրիսվյատի լիճը դարեր շարունակ այս ժողովուրդների վշտի ու լացի վկան է հանդիսացել։ Այս լճից սկիզբ է առել Դրիսվյատի գետը և անօգուտ հոսել։

Մի տարի առաջ Լատվիայի՝ Սվերդլովի, Լիտվայի՝ Ադամ Միցկևիչի և Արևմտյան Բելոռուսիայի Մոլոտովի անվան կոլտնտեսությունները որոշեցին լճի ջրերը օգտագործել էլեկտրակայանի տուրբինները պտտեցնելու համար։

Դրիսվյատի գետի վրա նրանք մի պատ-

վար կառուցեցին, իսկ նրա մոտ՝ էլեկտրակայան։ Լճի ջուրն այժմ աշխատեցնում է էլեկտրակայանը։ Միաժամանակ տարեկան 35 միլիոն խորանարդ մետր ջուր է տնտեսվում։ Կոլտնտեսականներն այս հանգույցը շատ կարճ ժամանակում կառուցեցին։

Ճարտարապետի այն հարցին, թե ի՞նչ աշխատանք կարող են կատարել կոլտնտեսականները, նրանք գրեթե մի պատասխան էին տալիս՝ «ամեն բան, ինչ հարկավոր է կսովորենք»։ Եվ իսկապես, մարդիկ եռանդուն կերպով լծվեցին աշխատանքի։

Լատիշ Լեոնարդ Դեգելն սկզբում հող փորող էր, այնուհետև դարձավ քարտաշ, ապա բետոնող։ Բայց նա դրանով չբավականացավ։ Շինարարության վերջում ընդունվեց էլեկտրակայանի շահագործման գործն ուսումնասիրողների խմբակը։ Իր համառ աշխատանքի ու ընկերների օգնության շնորհիվ նա դարձավ կայանի հերթապահ էլեկտրիկը։

Ադամ Միցկևիչի անվան կոլտնտեսության ատաղձագործ վարպետ Իոսիֆի տղան մի տարում դարձավ ատաղձագործների բրիգադիր։

Երբ բերեցին առաջին հողափոր մեքենան՝ սկրեպերը, տրակտորիստ Իվան Պիվորովիչին հանձնարարեցին աշխատեցնել այն։ Նա շատ աշխատասեր երիտասարդ էր և գործն արագ առաջ տարավ։ Այնուհետև շինարարությունն ստացավ մի տրակտորային ագրեգատ, որը միաժամանակ էքսկավատորի, բուլդոզերի, քարշիչի և վերամբարձ մեքենայի դեր է կատարում։ Իվան Պիվորովիչը կարողացավ այդ մեքենան էլ աշխատեցնել։

Շուտով գործարկման մեջ դրին աշտարակային վերամբարձը։ Առաջինը ղեկին մոտեցավ կոմերիտական կազմակերպության քարտուղար, էլեկտրիկ Վասիլի Նովիկովը։

Շինարարության վրա աշխատող կոլտնտեսականները որոշեցին խրախուսանքի համար «Կարմիր տախտակ» ունենալ։ Բայց երբ սկսեցին մտածել, թե ում ազգանուններ ը գրեն այնտեղ, պարզվեց, որ աշխատողների մեծ մասը առաջավորներ են։

1953 թվականի հուլիսյան գեղեցիկ օր էր։ Այդ օրը նրանք էլեկտրականություն էին ստանալու։ Հերթապահ էլեկտրիկը սեղմեց կոճակն ու առաջին էլեկտրական լույսը վառվեց Բելոռուսական, Լատվիական ու Լիտվական երեք կոլտնտեսության, ինչպես նաև տասնմեկ արտելների տերիտորիաներում։ Մարդկանց ուրախությանը չափ չկար։ Կոլտնտեսականներից շատերն առաջին անգամն էին էլեկտրական լուսավորություն տեսնում։ Նրանք չգիտեին, թե ինչպես արտահայտեն իրենց գոհունակությունը։

Շուտով, շատ շուտով այստեղի բնակիչները կդադարեն լճից տակառներով խմելու ջուր տեղափոխելը։ Էլեկտրականության օգնությամբ ջուրը խողովակների միջով կբարձրանա և կհոսի դեպի բնակավայրերը։

Անասունների կերը կպատրաստվի էլեկտրականության օգնությամբ։ Կովերը կկթվեն էլեկտրական կթիչներով։ Հացը կհնձեն ու կմշակեն էլեկտրական մեքենաների միջոցով։ Թռչնաբուծության զարգացման համար կստեղծվեն ինկուբատորներ։




Ահա թե ինչպիսի մեծ օգուտ է տալիս և տալու նոր էլեկտրակայանը եղբայրական երեք ժողովուրդներին։ Էլեկտրակայանի սպիտակ շենքի ճակատին դեռ հեռվից փայլփլում է «Ժողովուրդների բարեկամություն» ուղեկտող ցուցանակը։

# ՀԱՐՎԱԾԱՅԻՆ ԻՄ ՔԵՌՈՒ ՊԵՍ

ՎԻԿՏՈՐ ՎԱՐԴԱՆՅԱՆ

Նկ. ՀՈՎՀ. ՇԱՎԱՐՇԻ

Հանքափոր է քեռիս գիտե՞ք,
Թե ծանոթ չեք, ծանոթացեք..
Ես ասացի քեռուս մի օր.
— Քեռի՛, ես էլ զամ հանքահոր.
Տեսնեմ ո՞նց եք դուք աշխատում
Այս լեռների խոր ընդերքում:
Հաջորդ օրը՝ շուտ արթնացա
Ու դեպի հանք ճամփա ընկա:
Այնտեղ հագուստ տվեց քեռիս,
Նոր կոշիկներ երկարավիզ
Եվ մի գլխարկ մեծ, ծալքավոր:
Հագա, դարձա մի հանքափոր,
Ու քեռուս հետ հանգիստ իջա,
Թունելի պես հանքը մտա:
Տեսա՝ ներսում,
Ինչպես դրսում,
Միշտ, անընդհատ
Լույս կար առատ:
Հանքի խորքից, ա՛յ, քեզ զարմանք,
Դուրս էր հոսում մի ժիր առվակ.
Առվի ջուրը պղտոր էր շատ՝
Հանքաքարի գույնից էր այդ...



Լայն թունելով առաջացանք
Այստեղ, այնտեղ խորշեր տեսանք:
Մի բանվորի տեսանք խորշում,
Ժայռի կրծքում անցք էր բացում.
Հորատիչն էր գործում անվերջ
Նրա ամուր ձեռքերի մեջ:
Նա ճակատը ձեռքով շփեց
Եվ իմ քեռուն իր մոտ կանչեց:
Քեռիս խորհուրդ տվեց սիրով
Ու ետ դարձավ ինձ ասելով.
— Հանքաշերտն է պայթեցնելու,
Արի, Գառնի՛կ, գնանք հեռու:
Հանկարծ լսվեց ուժեղ թնդյուն.
Կարծես փլվեց մի հսկա տուն:
Հանքաքարը կիտվեց գետնին,
Ինչպես բլուր մի ահագին:
Հանքափորը մեղմ ժպտաց ինձ
Դղնձագույն բեղի տակից...
Զույարանում ենք մենք ահա.
— Ապա, Գառնի՛կ, նայիր հիմա:
Հսկայական վառարանում
Հանքաքարն է հալվում, եփվում:
Բանվորները աշխույժ ու վարժ,
Գործին հմուտ, արագաշարժ.
Առած ձողերը երկաթի՝
Մտել էին համառ մարտի.
Եվ տեսանք՝ ի՜նչ, վառարանից
Հոսեց ձուլվածք՝ հեղուկ պղինձ,
Արևի պես շառագունեց,
Կաղապարում լցվեց, սառեց:
Մեկ էլ ահա գետի ափով
Մի մեծ գնացք եկավ թափով:
— Ինչո՞ւ եկավ այս գնացքը:
— Պետք է տանի այն ձուլվածքը, —
Ասաց քեռիս ու երկուսով
Անցանք ամուր մի կամուրջով.
Լայն փողոցով ասֆալտապատ
Գնացինք տուն քայլով հանդարտ:
Գնում էինք ու զրուցում.
Ով տեսնում էր մեզ փողոցում,
Կամ անցնում էր քեռուս կողքով,
Բարևում էր խոր հարգանքով:
Քեռիս հայտնի հանքափոր էր
Եվ շատ ու շատ ծանոթ ուներ:
Որոշել եմ, երբ մեծանամ
Պղնձահանք պիտի գնամ.
Հարվածային իմ քեռու պես,
Հանքափոր եմ դառնալու ես:

# ԳԵՎՈՐԳ ԲԱՇԻՆՋԱՂՅԱՆ

Աշնան առավոտ է: Հաստաբուն կեչիները զրկվում են տերևներից: Նրանց շրջապատի կանաչ խոտն արդեն սկսում է դեղնել և չորանալ: Տեղ-տեղ սպիտակ երիցուկներ կան: Նրանք դեռ ուզում են ապրել: Ձախից՝ անցնում է մի լայն ճանապարհ, բարձրանում մինչև բլրակի գագաթը և իջնում ու անհետանում է հեռվում երևացող անտառի մեջ: Կեչիների գագաթները սուզվել են պարզ երկնքի մեջ: Արևի շողերն ընկել են ծառերի վրա: Նրանց երկար ստվերները խառնվել են այս ու այն կողմ թափված չոր ճյուղերին և գերաններին: Առավոտյան թարմ օդի մեջ թվում է թե լսվում է թռչունների ճռվողյունը: Կարծես նրանք անցյալ ուրախ օրերն են հիշում և ափսոսում, որ շուտով չվելու են հարավ...

1883 թվականին Պետերբուրգի Գեղարվեստի ակադեմիայի ուսանող Գևորգ Բաշինջաղյանը իր այս նկարի համար, որը կոչվում է «Կեչիների պուրակը», արժանացավ արծաթե մեդալի:

Գևորգ Բաշինջաղյանը ծնվել է 1857 թվականին Սղնախում: Ակադեմիայում ուսանելիս, նա խոշոր ազդեցություն է կրում ռուսական նշանավոր պեյզաժիստներ՝ Այվազովսկուց և Կուինջիից: 1883 թվականին նա թողնում է ակադեմիան և գալիս Թիֆլիս, շրջում է Անդրկովկասում, սկսում է նկարել հայրենի բնության հրաշալի տեսարանները:



Կեչիների պուրակը: *Գործ նկ. Գ. ԲԱՇԻՆՋԱՂՅԱՆԻ*

Գ. Բաշինջաղյանը շատ էր սիրում հայ ժողովրդին: Բայց նա իր ստեղծագործությունների զգալի մասը նվիրել է Վրաստանի, Ադրբեջանի և Ռուսաստանի բնության պատկերմանը: Այդ նկարներում նկարիչը իր խորը սերն ու համակրանքն է արտահայտում դեպի եղբայրական ժողովուրդները:

Գ. Բաշինջաղյանի լավագույն աշխատանքների թվին են պատկանում «Արարատը», «Սևանը լուսնկա գիշերով», «Դիլիջանի ճանապարհը», «Գիշերը Կասպից ծովում», «Ալազանի հովիտը», «Դարիալի կիրճը» և այլն: Սրանք իրենց նպատակասլաց կառուցվածքով, ավարտվածությամբ և գեղարվեստական բարձր կատարումով վկայում են հեղինակի խոշոր ստեղծագործող լինելու մասին:

Գ. Բաշինջաղյանը հանդես եկավ 19-րդ դարի վերջին և 20-րդ դարի սկզբին: Նա հայ ռեալիստական արվեստի հիմնադիրը եղավ:

Գ. Բաշինջաղյանը միաժամանակ և հասարակական գործիչ էր, գրող: Նա գրել է կերպարվեստի մասին հոդվածներ և մի շարք հետաքրքիր պատմվածքներ: Գ. Բաշինջաղյանի լավագույն ստեղծագործությունների մեծ մասը ցուցադրված է Հայաստանի Պետական պատկերասրահում:

*Մ. ՂԱԶԱՐՅԱՆ*

*(Պետական պատկերասրահի գիտաշխատող)*




Քաղաքացիական պատերազմի անեղ օրերին ծնվեց կոմերիտմիությունը: Այն ժամանակ նա իր ամբողջ ուժերն ու եռանդը նվիրեց միայն մեկ խնդրի՝ օգնել պարտիային ու ժողովրդին պաշտպանելու Հոկտեմբերյան ռևոլյուցիայի նվաճումները: Այդ օրերին կոմերիտմիության կոմիտեների դռներին հաճախ կարելի էր կարդալ՝ «Ռայկոմը փակ է, բոլորը մեկնել են ռազմաճակատ»:

Քաղաքացիական պատերազմում ցուցաբերած մարտական ծառայության համար կոմերիտմիությունը պարգևատրվեց Կարմիր Դրոշի շքանշանով:

Լենինի մահից հետո կոմերիտմիությունը կոչվեց Լենինյան: Կոմերիտականները երդվեցին սովորել, աշխատել ու պայքարել Լենինի պես, Լենինի օրինակով: Եվ նրանք ակտիվ կերպով մասնակցում էին մեր երկրի խաղաղ շինարարության բոլոր ասպարեզներում: Ամենուրեք ստեղծվում էին կոմերիտական հարվածային բրիգադաներ ու «թեթև հեծելազորներ», որոնք աշխատում էին անձնվիրաբար: Այդ աշխատանքների համար 1931 թվականին կոմերիտմիությունը պարգևատրվեց Աշխատանքային Կարմիր Դրոշի շքանշանով:

Այդ տարիներին կոմերիտմիության ուժերով կառուցվեց Կոմսոմոլսկ քաղաքը: Միլիոնավոր կոմերիտականներ ու երիտասարդներ աշխատեցին Դոնեցի ավազանում, Մոսկվայի մետրոպոլիտենի շինարարության վրա և շատ ուրիշ նորակառույցներում: Կոմերիտականների ուժերով ստեղծվեց հինգ հազար կոլտնտեսություն:

1941 թվականին բռնկվեց Հայրենական Մեծ պատերազմը: Պարտիայի կոչով սովետական ժողովուրդը ոտքի ելավ պաշտպանելու Հայրենիքը: Ռազմաճակատում, կոմունիստների հետ կողք-կողքի, հերոսաբար մարտնչում էին կոմերիտականները: Նիկոլայ Գաստելլոն, Ալեքսանդր Մատրոսովը, Զոյա Կոսմոդեմյանսկայան, Հունան Ավետիսյանը, Կրասնոդոնի երիտասարդ գվարդիականները և շատ ուրիշներ փառքով պսակեցին իրենց անունները: Նրանցից շատերը արժանացան Սովետական Միության Հերոսի կոչման: Այդ տարիներին կոմերիտմիությունը հերոսաբար էր աշխատում նաև թիկունքում:

Հայրենական պատերազմում ցուցաբերած մարտական ծառայությունների համար կոմերիտմիությունը պարգևատրվեց Լենինի շքանշանով:

Պատերազմից հետո կոմերիտմիությունը ակտիվ մասնակցություն է ցույց տալիս մեր երկրի տնտեսության վերականգնման ու զարգացման գործին: Կոմերիտմիության երեսնամյակի առթիվ Սովետական կառավարությունը նրան պարգևատրեց Լենինի երկրորդ շքանշանով:

Կոմերիտմիության ղեկավարությամբ է աշխատում Լենինի անվան պիոներական կազմակերպությունը:

Ոգեշնչված Սովետական Միության Կոմունիստական պարտիայի 19-րդ համագումարի որոշումներով, կոմերիտմիությունն այժմ լծված է կոմունիստական հասարակարգի կառուցման մեծ գործին:

Տպագրում ենք մի հատված ձեզ հայտնի վեպից, որը ցույց է տալիս կոմերիտմիության հերոսական պայքարի մի դրվագը:

# ԺՈՂՈՎՐԴԻ ՆԵՐԿԱՅԱՑՈՒՑԻՉՆԵՐԸ

(Հատված «Երիտասարդ գվարդիա» վեպից)

*Ա. ՖԱԴԵԵՎ*

*Նկ. Է. ՄԿՐՏՉՅԱՆԻ*

*Վերջապես եկավ մի օր, երբ նրանք չորսով հավաքվեցին ժորայի սենյակում՝ նա ինքը, Վոլոդյա Օսմուխինը, «Որտոն է որոտում» Տոլյան և Վանյա Զեմնուխովը՝ նրանց ավագ ընկերն ու ղեկավարը, որը ոչ այնքան որպես բանաստեղծ, որքան որպես «Երիտասարդ գվարդիայի» թռուցիկների և լոզունգների մեծ մասի հեղինակ, իհարկե, բոլորից ավելի էր շահագրգռված իրենց տպարանով: Եվ ահա դազգահը հավաքված էր: Տոլյա Օրլովը մի քանի անգամ փնչալով և հազալով, ինչպես տակառի մեջ, դազգա-*

հը վերցրած, քայլեց սենյակով՝ ցույց տալու համար, որ դագդահը ծայրահեղ դեպքում կարող է տեղափոխել մի մարդ։

Նրանք ունեին և տափակ վրձին, և քսելու գլան, իսկ տպարանական ներկի փոխարեն ժորայի հայրը, որն իր ողջ կյանքում գործ էր ունեցել միայն փայտ ներկելու և լաքելու հետ, պատրաստեց, ինչպես ինքն էր ասում, «օրիգինալ խառնուրդ»։ Եվ նրանք հենց այդտեղ սկսեցին ջոկջկել տառերն ըստ կասսաների, իսկ կարճատես Վանյա Զեմնուխովը, որին բոլոր տառերը թվում էին միևնույն «օ» տառը, նստել էր ժորայի մահճակալին և ասում էր, որ չի հասկանում, թե միայն այդ տառերից ինչպե՞ս կարելի է ստանալ ռուսական այբուբենի բոլոր տառերը։

Ճիշտ նույն պահին ինչ-որ մեկը թակեց վարագուրած լուսամուտը, բայց նրանք չշփոթվեցին. գերմանացիներն ու պոլիցիաները դեռ ոչ մի անգամ չէին մտել նորակառույցների այդ հեռու ծայրը։ Եվ իսկապես եկան Օլեգն ու Տուրկենիչը. նրանք ոչ մի կերպ չէին կարողացել նստել տանը, նրանք նույնպես ուզում էին որքան կարելի է շուտ որևէ բան տպել իրենց տպարանում։


— Իհարկե, ես համաձայն եմ...

Բայց հետո դուրս եկավ, որ նրանք այնքան էլ միամիտներ չեն։ Տուրկենիչը կամացուկ մի կողմ կանչեց ժորային, և նրանք միասին դուրս եկան բանջարանոց, իսկ Օլեգը, դրա վրա ուշադրություն չդարձնելով, մնաց Վոլոդյային ու Տոլյային օգնելու։

Տուրկենիչն ու ժորան պառկեցին սահմանաթմբի վրա, արևի տակ, որը հաճախ թաքնվում էր ամպերի տակ և արդեն աշնանային ջերմություն էր արձակում. դետինն ու խոտը դեռ թաց էին անձրևից։ Տուրկենիչը թեքվեց դեպի ժորան ու փսփսաց նրա ականջին։ Ինչպես և նա սպասում էր, ժորան խոկույն պատասխանեց նրան ամբողջ վճռականությամբ.

— Ճի՛շտ է։ Դա և՛ արդարացի է, և՛ ուսանելի է այդ սրիկաների համար... Իհարկե, ես համաձայն եմ։

Դա շատ նուրբ գործ էր՝ տղաների մեջ գտնել այնպիսիներին, ովքեր անեին այդ բանը ոչ միայն արդարության և կարգապահության զգացմունքից դրդված, այլ ում մոտ որ պարտքի բարձր բարոյական զգացումն այնքա՞ն էր վերածվել կամքի, որ նրա ձեռքը չէր դողա։

Տուրկենիչն ու Սերյոժկա Տյուլենինն առաջին մարդը նշեցին Սերգեյ Լևաշովին. նա անարատ երիտասարդ էր և արդեն շատ բան էր ապրել։ Հետո նրանք կանգ առան Կովալյովի վրա. նա համարձակ էր, բարի և ֆիզիկապես շատ ուժեղ. նրանց այդպիսի մարդ էր հարկավոր։ Սերյոժան առաջարկեց նաև Պիրոժոկին, բայց Տուրկենիչը մերժեց այն պատճառով, որ Պիրոժոկը շատ էր հակված դեպի ավանտյուրաները։ Իր լավագույն ընկեր Վիտկա Լուկյանչենկոյին Սերյոժկան իր մտքի մեջ ինքը մերժեց՝ խղճալով նրան։ Վերջապես, նրանք կանգ առան ժորայի վրա։ Եվ նրանք չսխալվեցին։

— Իսկ դուք չե՞ք հաստատել տրիբունալի

կազմը,— հարցրեց Ժորան։— Հարկավոր չէ, որ նա զբաղվի երկար դատաքննությամբ, կարևորն այն է, որ մեղադրյալն ինքը տեսնի, որ դատարանով են մահապատժի ենթարկում իրեն։

— Մենք ինքներս կհաստատենք տրիբունալը,— ասաց Տուրկենիչը։

— Մենք նրան կդատենք ժողովրդի անունից։ Այստեղ մենք այժմ ժողովրդի օրինական ներկայացուցիչներն ենք...— և Ժորայի սև, առնական աչքերը փայլեցին։

«Ա՛խ, արծի՛վ տղա»,— մտածեց Տուրկենիչը։

Ժորան մտածեց։ Նրա միտքն ընկավ Վոլոդյան, բայց Վոլոդյան շատ նուրբ հոգեկան կազմակերպություն ուներ այդպիսի գործի համար։

— Իմ հնգյակում կա Ռադիկ Յուրկին, գիտե՞ս։ Մեր դպրոցից։ Կարծում եմ, որ նա հարմար կլինի։

— Ախր նա երեխա է։ Կարող է հուզվել...

— Ի՞նչ ես ասում։ Երեխաները ոչնչից չեն հուզվում։ Այդ մենք՝ չափահասներս ենք միշտ որևէ բանից հուզվում,— ասաց Ժորան,— իսկ երեխաները, գիտե՞ս, բոլորովին էլ չեն հուզվում։ Նա այնքա՛ն հանգիստ է, այնքա՛ն խիզախ։

Այն ժամանակ, երբ Ժորայի հայրը հյուսնություն էր անում իր ծածկի տակ, մայրն իր բնավորությամբ բռնվեց Ժորայի կողմից՝ դռան բանալու անցքի մոտ, և Ժորան սովորված էր ասել նրան, որ ինքը լիովին ինքնուրույն մարդ է, ու իր ընկերները հասակ առած մարդիկ են, թող նա չզարմանա, եթե նրանք բոլորն էլ վաղն ամուսնանան։

Նրանք վերադարձան ճիշտ ժամանակին. շրիֆտը ջոկված էր և Վոլոդյան արդեն մի քանի տողերից կազմված սյունակ էր շարել։ Ժորան վայրկենապես վրձինը թաթախեց «օրիգինալ խառնուրդի» մեջ, իսկ Վոլոդյան թերթերը դրեց և գլանիկը գլորեց դրանց վրայով։ Տպագիր տեքստը դուրս եկավ սև շրջանակի մեջ այն մետաղաշերտերից, որ Վոլոդյան անփորձության հետևանքով բավարար չափով չէր տաշել իր մեխանիկական ցեխում։ Բացի դրանից, տառերը դուրս եկան տարբեր չափի, բայց այդ բանի հետ հարկ եղավ հաշտվել։ Ամենակարևորն այն էր, որ նրանք իրենց առջև ունեին իսկական տպագիր տեքստ և բոլորը կարողացան կարդալ այն, ինչ որ շարել էր Վոլոդյա Օսմուխինը։

«Մի առանձնանա Վանյայի հետ մի նյարդայնանա. միևնույն է, մենք գիտենք քո սրտային գաղտնիքը Այայայ»։

Վոլոդյան բացատրեց, որ նա աշխատել է ընտրել «յ» տառով բառերը և նույնիսկ «Այայայ»-ը շարել է նրա համար, որովհետև «յ» տառերից տպարանում ամենից շատ կա, իսկ կետադրական նշանները նա չի շարել, մոռանալով, որ դրանք հարկավոր է շարել տառերի պես։

Օլեգն ուղղակի տարացավ։

— Իսկ դուք գիտե՞ք, որ Պերվոմայկայում երկու աղջիկ խնդրում են իրենց ընդունել կոմերիտմիության մեջ,— հարցրեց նա՝ նայելով բոլորին իր մեծ, շողացող աչքերով։

— Իմ հնգյակում նույնպես կա մի տղա, որն ուզում է ընդունվել կոմերիտմիության մեջ,— ասաց Ժորան։

Այդ տղան նույն Ռադիկ Յուրկինն էր, որովհետև Ժորա Հարությունյանցի հնգյակն առայժմ բաղկացած էր միայն Ռադիկ Յուրկինից։

— Մենք «Երիտասարդ գվարդիայի» տպարանում կարող ենք տպագրել կոմերիտմիության ժամանակավոր տոմսեր,— բացականչեց Օլեգը։— Չէ՞ որ մենք իրավունք ունենք ընդունելու կոմերիտմիության մեջ. մեր կազմակերպությունը հաստատված է պաշտոնապես...




# ՀԱՂԹՈՂՆԵՐԸ

Գ. ԱՌԱՔԵԼՅԱՆ

— Իսկ այժմ մի քանի փորձնական մարտ կկազմակերպենք,— պարապմունքները ղադարեցնելով ասաց մարզիչ Զատիկյանը։

— Ռաֆի՛կ, Կարո՛, պատրաստվեցեք։

Երկու պատանին մտան ռինգ։ Սկսվեց մարտը։ Կարոն դիպուկ հարվածներ էր հասցնում։ Սակայն Ռաֆիկը ճարպկորեն խույս էր տալիս։ Կարոն տարվելով հարձակման տեմպով, պաշտպանվելը մոռանում էր։

— Պաշտպանիր դեմքդ, Կարո՛,— կանչեց մարզիչը։

Նա հազիվ էր արտասանել այս բառերը, երբ Ռաֆիկը հարված հասցրեց Կարոյի դեմքին։ Կարոն երերաց։ Մարզիչը ընդհատեց մարտը և արագ մոտեցավ նրան։

— Եթե միշտ այդպես վարվես, լավ արդյունք չի լինի. ինչքան էլ հարձակվես, պետք է մտածես նաև պաշտպանվելու մասին։

Կարոն լուռ լսում էր։

Մարզումներից հետո տղաները աշխույժ զրուցում էին միմյանց հետ։

— Ռազմի՛կ, հիշո՞ւմ ես ինչքա՞ն թույլ էիր և ոչինչ էլ չգիտեիր, երբ առաջին անգամ ռինգ մտար,— ասաց Պետիկը։

Ռազմիկը ժպտալով նայեց ընկերոջը։ Այո, ճիշտ է...

Երկու տարի առաջ էր։ Ռազմիկը դիտում էր պատանի բռնցքամարտիկների ելույթները։ Նրա գլխում միտք ծագեց. «ես էլ կարող եմ»։

Մի օր էլ նա ուր գրեց սպորտային դահլիճ։ Մարզիչն իր առաջ տեսնելով փոքրիկ տղային սկզբում զարմացավ։

— Ես էլ եմ ուզում պարապել։

Մարզիչին դուր եկավ պատանու հաստատակամությունը։ Եվ Ռազմիկն սկսեց բռնցքամարտով պարապել։

Ֆոտո՝ Վ. ՍԵՎՈՅԱՆԻ

— Տղանե՛ր, իսկ հիշո՞ւմ եք Ռաֆիկի պատմությունը,— կանչեց պատանիներից մեկը...

Մի անգամ փողոցում երկու տղա վեճի բռնվեցին։ Ռաֆիկը ճանաչում էր նրանցից մեկին։ Եվ ահա վեճը կռիվ դարձավ։ Ռաֆիկը մեջ ընկավ և սկսեց հարվածել իրենից մեծ, բարձրահասակ տղային։ Իսկ երբ մեծահասակները միջամտեցին, Ռաֆիկն խույն ուզեց փախչել. բայց մի անծանոթ մարդ բռնեց նրա ձեռքը։

— Կռվարարն ես, հա՜,— խիստ տոնով ասաց անծանոթը։

Ռաֆիկը ոչինչ չպատասխանեց։

— Սպորտով պարապո՞ւմ ես։

— Շատ քիչ։



Պասկինը (Լենինգրադ) և Չետիրկինը (Մոսկվա) ռինգում:

— Ուժեղ ձեռքեր ունես. զբաղվիր բռնցքամարտով։

Ռաֆիկը զարմացած նայեց անծանոթին, որը բարեկամաբար ժպտում էր։

— Վաղը կգաս ֆիզկուլտուրայի կենտրոնական տուն. իմ ազգանունը Զատիկյան է, բռնցքամարտի մարզիչ։

Հաջորդ օրը Ռաֆիկն արդեն մասնակցում էր մարզական առաջին պարապմունքին…

Այսպես գրուցելով, տղաները առաջ էին գնում։

Վրա հասավ Համամիութենական մրցումների օրը։ Երևանի «Սպարտակ» ընկերության կենտրոնական հրապարակի վրա հպարտորեն փողփողում էին մետաքսյա տասնվեց դրոշ։ Նրանց վրա երևում էին միութենական բոլոր ռեսպուբլիկաների պետական գերբերը։

Այստեղ էին եկել Ռուսաստանի, Ուկրաինայի, Վրաստանի և այլ ռեսպուբլիկաների պատանի բռնցքամարտիկները, Մոսկվայի և Լենինգրադի թիմերը։ Տրիբունաների վրա ոչ մի ազատ տեղ չկա։ Բարձրախոսներն անընդհատ մրցման են հրավիրում տարբեր քաշերի բռնցքամարտիկներին։

Ահա ռինգ են դուրս գալիս Կարո Կարապետյանը և Վրաստանի թիմից Լադո Դավիշվիլին։ Կարոն ուժեղ թափով է սկսում



Ռ. Պետրոսյանը (Հայաստան) և Ա. Սիմոնյանը (Ադրբեջան) բռնցքամարտից հետո։

մարտը։ Հենց առաջին վայրկյաններից նա իր մրցակցին նեղն է գցում։ Հանդիսականները լարված ուշադրությամբ են հետևում մարտին։ Կարոյի ընկերները հուզված են։

— Էլի բաց է խաղում, չի պաշտպանվում,— ասում է տղաներից մեկը։

— Կարո՛, պաշտպանվիր,— չկարողանալով իրեն պահել գոչում է Վոլոդյան։

Կարոն չի լսում, տարված է հարձակումով։

Դավիշվիլին հմտորեն պաշտպանվում է, խույս տալով հարվածներից։ Ահա նա հարմար մոմենտ է որսում, արագ շուռ գալիս և աջ ձեռքով հարվածում։ Հարվածը չեշտակի էր և դիպուկ։ Կարոն չէր սպասում։ Նա երերում է և կամաց ընկնում հատակին։ Նոկաուտ։ Հաղթում է Դավիշվիլին։ Շուտով Կարոն ուշքի է գալիս և մեղավորի հայացքով նայում մարզիչին։

Մրցումները շարունակվում են։ Ռաֆիկը հմտությամբ է մարտնչում մրցակիցների դեմ և բազմաթիվ հաղթանակներից հետո շահում է առաջին տեղը։ Նա դառնում է Սովետական Միության չեմպիոն։

Փոթորկալից ծափերի տակ բարձրախոսները հաղորդում են հաղթողների անունները։ Ռինգի կենտրոնում կանգնած դատավորը բարձրացնում է չեմպիոնների ձեռքերը։

— Հաղթեց Պետիկ Ոսկանյանը (Հայաստան)։ Չեմպիոնի կոչում նվաճեց Լև Մուխինը (Ռուսաստան)։

Սովետական Միության չեմպիոնի կոչումը երկրորդ անգամ նվաճեց դադախ Քարիմովը։

— Հաղթեց Կիմ Ենգոյանը (Հայաստան)…

Հաղթողները շնորհավորում են միմյանց, նրանց են մոտենում մյուս ռեսպուբլիկաների սպորտսմենները։ Պետիկին է մոտենում մոսկվացի հայտնի բռնցքամարտիկ Շվեդովը։ Նա բարեկամաբար թափահարում է Պետիկի ձեռքը.

— Հրաշալի էր, շնորհավորում եմ։

— Դու կարող էիր ավելի լավ դուրս գալ,— նույն բարեկամական տոնով պատասխանում է Պետիկը։

Հայաստանի պատանի բռնցքամարտիկները շահեցին ամենաշատ միավորը և Համամիութենական մրցումներում նրանց թիմը գրավեց առաջին տեղը։ Երկրորդ տեղը գրավեցին Ռուսաստանի ֆեդերացիայի առաջին թիմի, իսկ երրորդ տեղը անցյալ տարվա երկրի չեմպիոն Մոսկվայի թիմի սպորտսմենները։ Հայաստանի թիմին շնորհվում է Սովետական Միության 1953 թվականի չեմպիոնի կոչում։

# ՓԻՂԸ

ՎԱԶԳԵՆ ՏԱԼՅԱՆ

Նկ. Ս. ՍՏԵՓԱՆՅԱՆԻ

Փիղը մտավ կրկեսը,
Բռնեց կրկեսի կեսը.
Ի՜նչ հսկա է, ի՜նչ հսկա,
Ոնց որ սարը կրկես գա:
Այդ ո՞ր դռնից մտավ ներս,
Եկավ կանգնեց լուռ ու հեզ:
Երբ ոտք դրեց՝ գետինը
Իջավ, ինչպես ռետինը...
Ա՜յ քեզ փի՜ղ,
Ա՜յ քեզ փի՜ղ...

Այնքա՜ն մեծ է, այնքան մե՜ծ...
Մի դեզ խոտը նա ծամեց,
Խմեց մի մե՜ծ տակառ ջուր,
Գլխով արեց՝— էլի տուր:
Մի քիչ փչեց կնճիթով՝
Շոգ ամառը դարձավ զով.
Մեջքին մի տուն կտանի...
Ա՜յ քեզ ուժեղ կենդանի...
Փիղ է հա՜,
Փիղ է հա՜...
Կարճ անունով՝ աժդահա:



# ԸՋԱՏԱՐԱՐԸ

Վ. ԱՆԱՆՅԱՆ

*Այս արտասովոր դեպքը տեղի ունեցավ ապրիլին, Քասախ գետի ափին։*

*Նախորդ գիշերը սարերում հորդ անձրև տեղաց։ Ձմեռվա ընթացքում Արագածի բարձունքներում կուտակված ձյունը արագ հալվեց և խշշոցով ցած եկավ։ Հարյուրավոր պղտոր վտակներ իջան, միացան իրար, դարձան հեղեղ։ Քասախ գետը ուռցրեց իր մեջքը, դուրս եկավ ափերից և պղտոր հորձանքներով գրոհեց դաշտերն ու այգիները։ Այդ ժամանակ ամբողջ էջմիածնի կոլտնտեսությունները ոտքի ելան։ Բեռնատար, փորող, ինքնաթափ մեքենաներն արշավեցին դեպի գետը և սկսվեց կազմակերպված մարդկանց կռիվը հեղեղի դեմ։ Երբ կարկատեցին գետի պատռվածքները, վերականգնեցին ավերված ամբարտակները և գետին հարկադրեցին հոսել իր նախկին հունով, մարդիկ հանգիստ շունչ առան։ Ամեն մեկն իր ձեռքի գործիքին հենված՝ դիտում էր դաշտը, որ տեղ-տեղ ծածկված էր պղտոր ջրով։*

*— Քասախը մեր ցանքը լավ պարարտացրեց,— ձեռքն արևահար դեմքին հովարած՝ դաշտին նայում և ասում էր քեռի Ավագը՝ մի ծեր կոլտնտեսական։ — Ինչ մորթով եկավ, ինչ սուսացվեց...*

*— Հա՛, թալանի եկավ, բայց իր ունեցածն էլ մեզ թողեց,— հաստատեց կողքին կանգնած մարդը։*

*Իսկապես, ի՞նչ տիղմ էր սարերից բերել Քասախը և փռել բամբակի պլանտացիաներում, ի՞նչ արգավանդ տիղմ...*

*Հեղեղը չարիք է։ Բայց հզոր տեխնիկայով զինված կոլտնտեսականներն այդ չարիքը վերածեցին բարիքի։ Հենց դրանից էլ գոհ էին ցեխոտ և հոգնած հողագործները և դա երևում էր նրանց խաղաղված դեմքերից։ Միայն մի արարած, մի փոքրիկ արտույտ, տագնապով թևածում էր պղտոր ջրերի վրա։ Նա ճչում, ծղրտում, սրտակտոր կանչերով նետվում էր դեպի առափնյա այն թումբը, որ հեղեղն իր մեջ էր առել և սպառնում էր հիմքից պոկել ու տանել իր հետ։*

*Մարդկանց ուշադրությունը խաղաղ դաշտերից կենտրոնացավ այդ թմբնակի վրա։ Ի՞նչ է ուզում, ինչո՞ւ է ողբում արտույտը գարնանային այս պայծառ օրը։*

*— Տղե՛րք, թմփի վրա բույն կունենա, աչքերդ սուր են, մի լավ նայեցեք,— ձայն տվեց քեռի Ավագը և ջրվորի նման շալվարի փողքերը վեր քաշելով ու ձեռքի բահին հենվելով՝ գնաց դեպի թումբը։ Ջուրը ծնկներին հասավ։ Ավագը կանգ առավ և լարեց տեսողությունը. թմփի խիտ սաղարթների մեջ ոչինչ չէր երևում։ Մայր արտույտը պտըտվում էր այդ թմփի շուրջը և իր թռչնային ձայնով կարծես օգնություն էր աղերսում մարդկանցից։*

*— Դե լա՛վ, քիչ հետո ջուրը կիջնի, ի՞նչ ես ձայնդ գլուխդ գցել,— չգիտես մայր թռչունին, թե իրեն հանգստացնելու համար ասում էր քեռի Ավագն ու հետն էլ մտածում. «Ա՛յ մի նավակ լինե՜ր»։*

*Ջուրն իր հետ ինչ ասես, որ չէր բերում. է՛լ ճյուղեր, է՛լ փայտի կտորներ, է՛լ խոփվ ու արմատ։ Գալիս էին դրանք ջրի բաշին թառած, սրընթաց անցնում թմփի մոտով. դե, մայր արտույտն ինչպե՞ս հանգիստ մնար։ Ահա մի կտոր տախտակ զարնվեց թմփին ու դեմ առավ նրան. բարակ ճյուղերը ցնցվեցին, կռացան, նորից շտկվեցին։*

*Մինչ արտույտը տագնապահար պտտվում էր թմփի վրա, մի ճերմակ արագիլ անվրդով կանգնել էր ծանծաղ ջրով ծածկված հողում ու խաղաղ հայացքով իր շրջակայքն էր դիտում։ Նա սովոր է այդ մարդկանց ներկայությանը։ Երբ նրանք վար ու ցանք են կատարում դաշտում, ինքն իր կարմիր ու երկար ոտքերով շրջում է նրանց հետևից։ Նա վարժվել է անգամ մեքենաների աղմուկին։ Երբ տրակտորները ակոս առ ակոս շուռ են տալիս շագանակագույն հողը, նրանց հետևից վազող սերմնացանների հետ նա ևս ճաշակում է հողի ընդերքից դուրս հանված թրթուռները։ Վաղուց է նա մարդուն բարեկամ, և հիմա երբեմն վստահ, երբեմն վարանոտ քայլում է դեպի գետը և կանգ առնելով՝ ականջ է դնում արտույտի կանչերին։*

Ահա նա մի ոտքը բարձրացրեց, ուշադրությունը լարեց և կարծես գլխի ընկնելով՝ ծանր-ծանր օդ բարձրացավ։ Մի զույգ կարմիր, երկար ոտքեր կախվեցին բազմության վրա և արագիլն շտապեց դեպի հորձանքներից երերվող Թուփը։ Քեռի Ավագը ետ-ետ գնաց ու ձեռքով նշան արեց, որ Թփին ոչ ոք չմոտենա։

— Օգնության է եկել, չխրտընեցնե՞ք,— կարգադրեց նա։

— Ի՞նչ օգնության, հիմի ճուտերին անուշ կանի։

— Իսկապես, կուտի՞ որ։

— Մի տեսեք, արտույտը իջավ Թփին, երևի իր բնի տեղն է ցույց տալիս։

Այսպես մարդիկ դատողություններ էին անում։ Բոլորի ուշադրությունն էլ Թփին էր, տագնապահար մայր արտույտը և Թփի վերևում դանդաղ պտույտներ գործող ճերմակ Թռչունը։ Արագիլը գլուխը կախած ուշադիր զննում էր Թուփը։ Հանկարծ նկատեց իր փնտրածը, ցած խոյացավ և իր ահագին կտուցով կանաչ սաղարթների միջից մի գորշ բույն հանելով՝ Թևածեց դեպի մոտակա այգիները։ Մայր արտույտը ճչոցով հետևում էր նրան։

Ով ջահել էր կամ ոտքից թեթև, վազեց այգիների կողմը. նրանց հետևից էլ՝ ծեր հողագործ Ավագը, Թաց բահն ուսին։

Հասավ այգին, կանգ առավ և լայն ժպտաց։ Դեղձենու կարմիր ծաղիկների մեջ



Մայր արտույտը ճչոցով հետևում էր նրան։

խնամքով դրված էր արտույտի բույնը և աղվամազով պատած մի խումբ Թռչնիկներ նրա միջից դեղին կտուցները դուրս մեկնած՝ ուտելիք էին խնդրում իրենց մորից։ Քիչ առաջ մեծ սարսափ ապրած մայր արտույտը խաղաղվել ու կտուցով հարդարում էր իր ձագերի թրջված թևերը, և մարդիկ գոհ էին, որ երջանիկ է այդ փոքրիկ մայրը։

Իսկ արագի՞լը։ Ահա նա քիչ հեռու, ծաղկած ծիրանիների տակ, արժանապատվությամբ և հպարտ ետ ու առաջ է քայլում։

---

# ԱՋՔԱԿԱՊՈՒԿ

Ա. ՇԱՀԻՆՅԱՆ

Նկ. Ս. ՍԱՖԱՐՅԱՆԻ

Ամռանը Հրանտիկն ու Համիկը հյուր գնացին տատիկի այգին։ Այգում շատ ծառեր կային, բայց ամենից գեղեցիկն այն փոքրիկ սալորենին էր, որի դալար ճյուղերը կախ էին ընկել մրգի ծանրությունից։ Հրանտիկը սալոր շատ էր սիրում, իսկ տատիկը պատվիրել էր չքաղել։ Սալորները դեռ չէին հասել։

Մի անգամ Հրանտիկն ու Համիկը խաղում էին այգում. տատիկն էլ պատշգամբում նստած գուլպա էր գործում։ Հրանտիկը փորձում էր չնայել սալորենուն, բայց չէր կարողանում. կլորիկ սալորներն ասես աչքով էին անում նրան կանաչ տերևների արանքից։

— Համի՛կ ջան, եթե սալոր քաղեմ, դու

տատիկին չես ասի, չէ՞,— աչքերը կկոցելով հարցրեց նա քրոջը։

— Կասեմ։

— Միայն մեկը,— ցուցամատը վեր բարձրացնելով խնդրեց Հրանտիկը։

— Չէ՛, միևնույն է՝ կասեմ։

— Քեզ համար էլ կքաղեմ...

— Ես չեմ ուզում,— պատասխանեց Հասմիկը։

Հրանտիկը ցանկացավ համոզել քրոջը՝ ոչինչ չստացվեց։ Նա ձանձրացավ և այն է, ուզում էր դուրս գալ այգուց, երբ ինչ-որ բան հիշեց ու ետ դարձավ։



— Վա՜յ, մայրիկ ջան, ոտս...

— Հասմի՛կ, եկ մի լավ խաղ խաղանք, ուզո՞ւմ ես,— հարցրեց նա քրոջը։

— Ի՞նչ խաղանք։

— Աչքակապուկ, մենք միշտ էլ խաղացել ենք մանկապարտեզում։

— Իսկ ինչպե՞ս են խաղում,— ուրախ հարցրեց Հասմիկը։

— Ա՛յ, ես կկապեմ քո աչքերը, հետո կկանգնեմ մի քիչ հեռու՝ Ջեկոյի բնի մոտ,— նա ցույց տվեց շան բույնը,— և այնտեղից ձայն կտամ, իսկ դու փորձիր գտնել ինձ։

Հասմիկի աչքերը ուրախությունից շողացին։

— Լավ, խաղանք,— համաձայնեց նա։

Հրանտիկը քրոջ մազերից քանդեց վարդագույն ժապավենը և աչքերը նրանով կապելուց հետո, բացագանչեց.

— Դե՛, բռնիր ինձ։

Հասմիկը ձեռքերը մեկնած, կույր մարդու նման սկսեց գնալ դեպի շան բույնը։ Եղբայրն առիթից օգտվելով, առանց դժվարանալու, սկյուռի նման բարձրացավ սալորենու վրա։ Մինչ Հասմիկը փորձում էր գտնել եղբորը, Հրանտիկը գրպանը լցրեց սալորներով։

— Չես կարող, չէ,— բացագանչեց Հրանտիկն ու փորձեց տեղափոխվել մյուս ճյուղին։ Հանկարծ ճյուղը սկսեց ճռճռալ։ Մեկ էլ՝ չը՜խկ... ու նա ջարդված ճյուղի հետ միասին ընկավ։ Կանաչ սալորները թափվեցին գրպանից։

— Վա՜յ, մայրիկ, ջա՜ն, ոտքս,— բղավեց Հրանտիկը և լաց եղավ։

Ընկնելիս նրա ծունկը դիպել էր ծառի տակի կոճղին ու քերծվել։ Հասմիկը եղբոր հանկարծակի լացից բացեց աչքերը։ Ոչինչ չհասկանալով, ապշած կանգ առավ։ Տատիկը լսելով թոռան ձայնը, տմբտմբացնելով վայր իջավ պատշգամբի աստիճաններով։

— Այդ ո՞վ արեց,— վախեցած հարցրեց նա։

— Այդ ես... ես արեցի՜,— լացակումած ասաց Հրանտիկը,— Հասմիկը ինչո՞ւ չասաց, որ ճյուղը կոտրվում է։

— Ես մեղավոր չեմ, դու կապեցիր իմ աչքերը, էլ ինչպե՞ս տեսնեի ճյուղը։

Տատիկը նայեց Հասմիկի ձեռքի ժապավենին, նայեց ջարդված ճյուղին և նկատելով գետնին թափած սալորները, ամեն ինչ հասկացավ։

# ԴՐՈՒԺԻՆՆԵՐՈՒՄ, ՋՈԿԱՏՆԵՐՈՒՄ, ՕՂԱԿՆԵՐՈՒՄ

## ՇՆՈՐՀԱԼԻ ԱՇԽԱՏԱՆՔ

«Սիրելի ընկերներ, պատմեցեք մեզ, թե ինչպես եք դուք կարողացել պատրաստել քայլող էքսկավատոր, ի՞նչ գրականությունից եք օգտվել, ովքե՞ր են ձեզ օգնել և ինչպիսի՞ դժվարությունների հետ է կապված մոդելի կառուցումը: Մենք ցանկանում ենք, ձեր փորձի հիման վրա, նույնպես պատրաստել քայլող էքսկավատոր»,— գրում են Երևանի Չերժինսկու անվան դպրոցի ֆիզիկայի խմբակի անդամներին մեր երկրի մի քաղաքի պիոներները:

Մինչև այժմ խմբակի անդամները Սովետական Միության զանազան քաղաքներից՝ Մոսկվայից, Լենինգրադից, Տամբովից, Կույբիշևից և այլ վայրերից ստացել են հարյուրից ավելի նամակ: Պիոներները ու դպրոցականները իրենց նամակներում շնորհավորում են խմբակի անդամներին ձեռք բերած հաջողությունների համար և ուզում են հետևել նրանց օրինակին:

Քայլող էքսկավատորի մոդելը պատրաստել են խմբակի անդամներ Ա. Ջարակյանը և Ս. Բակունցը: Նրանք ինքնուրույն կերպով ուսումնասիրել են էլեկտրական քայլող էքսկավատորի կառուցվածքը: Կարդացել են համապատասխան գրքեր, օգտվել «Տեխնիկա Մոլոդյոժի» ամսագրից: Երբ մի որևէ հարցում նրանք դժվարանում էին, կամ անհասկանալի էր լինում, դիմում էին ֆիզիկայի դասատու և խմբակի ղեկավար ընկեր Պիվազյանին: Նրանց օգնում էին նաև դպրոցի դիրեկցիան ու ծնողները: Եվ կարճ ժամանակից հետո, էքսկավատորի մոդելը պատրաստ էր: Դա նույն քայլող էքսկավատորն է՝ հիսուն անգամ փոքրացրած: Նրա երկարությունը 70 սանտիմետր է, լայնությունը՝ 40, բարձրությունը՝ 45, սլաքի երկարությունը, որից կախված է էքսկավատորի շերեփը՝ 120 սանտիմետր է: Էքսկավատորը աշխատում է էլեկտրականության միջոցով: Նրա բանվորական շրջանակին ամրացված է շրջվող պլատֆորմը: Երբ էքսկավատորն սկսում է աշխատել, մեքենան հենվում է աշխատող շրջանակի վրա, հնարավորություն ստանում տարբեր կողմեր շրջվելու: Մեքենան քայլում է երկու դանուկի օգնությամբ: Դանուկները բարձրանում և իջնում են հիդրավլիկական մամլիչների միջոցով և մեքենան քայլում է: Էքսկավատորի ամեն մի քայլը հինգ սանտիմետր երկարություն ունի:

Քայլող էքսկավատորը մեծ հետաքրքրություն է առաջացրել դպրոցի բոլոր աշակերտների շրջանում: Ֆիզիկայի դասերի ժամանակ էքսկավատորը օգնում



*7-րդ դասարանի աշակերտները ուսումնասիրում են էքսկավատորի գործող մոդելի աշխատանքը:*

*Ֆոտո Հ. ՀԵՔԵՔՅԱՆԻ*

է դպրոցականներին ծանոթանալու էլեկտրական էներգիայի օգտագործմանը, Պասկալի օրենքին, օգտակար գործողության գործակցին, պինդ մարմինների ճնշմանը:

Բացի քայլող էքսկավատորից ֆիզիկայի խմբակի անդամներ՝ Սարդարյանը, Մելիք-Ավագյանը, Հարությունյանը, Սարգսյանը և ուրիշներ պատրաստել են շատ ուրիշ մոդելներ՝ թեք հարթության մոդել, ձայնի արագությունը որոշող գործիք, էլեկտրամոտորներ: Նրանք որոշել են այս տարի նոր, հետաքրքիր սարքեր կառուցել և հարստացնել իրենց ֆիզիկայի կաբինետը:

Երևանի Չերժինսկու անվան դպրոցի ֆիզիկայի խմբակի աշխատանքի փորձը օգտագործում են մեր ռեսպուբլիկայի շատ դպրոցներ:

Դ. ԳԱԼՋՅԱՆ




Մեր դպրոցի ամբողջ բակը մշակված է։ Այդ գործն արել ենք մենք՝ պատանի միչուրինականներս։ Մեր խմբակը երեսուն անդամ ունի։

Դպրոցի բնագիտության դասատու ընկեր Աբրահամյանի ղեկավարությամբ մենք աճեցրել ենք կարտոֆիլ, կաղամբ, պոմիդոր, սոխ, բամբակ և այլ կուլտուրաներ։ Դորա Զադոյանը, Հայկուշ Վարդանյանը, Ցեղյա Կարապետյանը ուշադիր կերպով հետևում էին բույսերի զարգացմանը և համապատասխան նշումներ կատարում օրագրերում։ Բազմաթիվ փորձերը մեզ համոզեցին, որ ազոտային աղերով պարարտացված հողից ավելի շատ կարտոֆիլ և կաղամբ է ստացվում։

Մեր ընկերներից մի երկուսը վստահ չէին, որ փորձերը հաջող կանցնեն։ Մարիետան ասում էր, թե սովորաբար տեղում «Անահիտ» պոմիդորը բերք չի տա։ Կոլտնտեսությունից բերած կալիումական աղերով մենք պարարտացրինք հողը և բարձր բերք ստացանք։

Մի օր էլ մեզ մոտ եկավ կոլտնտեսության նախագահը։ Նրան ամենից շատ դուր եկավ ելակը։

— Տեսնո՞ւմ եք,— ասաց նա,— դուք մեզանից առաջ եք անցել, կոլտնտեսությունը դեռ ելակ չունի։

Մենք խոստացանք գարնանը կոլտնտեսությանն այնքան ելակի սածիլ տալ, որ մի հեկտար տարածություն զբաղեցնի։

Մենք աճեցնում ենք նաև պտղատու ծառեր։ Բարձր բերք են տալիս ծիրանիները, ընկուզենիները, սալորենիները։ Այս տարի մեր այգու ծառերից մի տոննա ծիրան ստացանք։ Լավ են աճել նորատունկ բալենիներն ու տանձենիները։ Այդ ծառերը խնամում են Ջեմմա Ամիրզադյանը, Արշակ Առաքելյանը և Վոլոդյա Մաթևոսյանը։

Գեղեցիկ է մեր ծաղկանոցը։ Դեղնածաղիկ, մեխակ, զանգակ և բազմաթիվ այլ ծաղիկներ կան այստեղ։

Դպրոցի դիրեկտոր ընկեր Սիմոնյանը այս տարի Մոսկվայից բերել տվեց տասներկու տեսակի ծաղկի սերմ։ Մենք չգիտեինք, որ դրանք սկզբում պետք է աճեցնել ջերմոցում, հետո սածիլել։ Այդ պատճառով ծաղիկների մեծ մասը չաճեց։ Սրանից հետո ավելի խնամքով կաշխատենք։

Մեր դպրոցամերձ հողամասի բույսերից ու ծաղիկներից նմուշներ ենք պահում բնագիտական կաբինետում։

ՑԵԼԻՔՍ ՀՈՎՀԱՆՆԻՍՅԱՆ
(Արտաշատի շրջանի Դվին գյուղի 7-ամյա դպրոցի 5-րդ դասարանի աշակերտ)




Կ. ԱՎԵՏԻՍՅԱՆ
(Աշխարհագրական գիտությունների թեկնածու)

Եվրոպայի ափերը արևմուտքից ողողում է Ատլանտյան օվկիանոսը։ Նրա արևմտյան ափերի, հատկապես Հյուսիսային Ամերիկայի Նյուֆաունդլենդ կղզու հյուսիս ընկած մասի կլիման դաժան է և ցուրտ։ Ավելի հյուսիս տարածվում են սառցադաշտերը։ Եվրոպայի արևմտյան ափերի մոտ ընկած է Իսլանդիա կղզին, իսկ նրա դի-

մաց, ամերիկյան ափերի մոտ՝ Լաբրադոր թերակղզին: Այդ երկու երկրները գտնվում են բևեռից միևնույն հեռավորության վրա, այսինքն, նույն լայնության վրա, բայց կլիման տարբեր է: Իսլանդիան կոչվում է «կանաչ կղզի»: Այնտեղ նույնիսկ մշտադալար մրտենի է աճում. իսկ Լաբրադորն անհրապույր և ցուրտ տունդրա է: Այդպիսի խիստ տարբերություն կա նաև Սովետական Միության հյուսիսային նավահանգիստ Մուրմանսկի և Գրենլանդիայի միջև: Վերջինս ձմռանը սառցապատ է, այնինչ Մուրմանսկի նավահանգիստը երբեք չի սառչում: Այդ բոլորի պատճառը Գոլֆստրիմ տաք հոսանքն է:

Գոլֆստրիմ բառացի նշանակում է «ծոցային հոսանք» և իրոք, նա գալիս է Մեքսիկական ծոցից. բայց նրա ակունքները պետք է որոնել հասարակածի ջրերում: Նրան մղողը հյուսիս-արևելյան և արևելյան պասսատ քամիներն են: Հասարակածային այդ հոսանքը Յուկատանի նեղուցով մտնում է Մեքսիկական ծոց. դրա հետևանքով Մեքսիկական ծոցի ջրերի մակարդակը բարձրանում է և նրանք մեծ ճնշումով Ֆլորիդայի նեղուցով դուրս են գալիս Ատլանտյան օվկիանոս: Այդ հոսանքը մի հսկա գետ է, բայց ափեր չունի: Նրա լայնությունը սկզբում 80 կիլոմետր է, ապա գնալով ավելի է լայնանում և իր ընթացքի ժամանակ, հյուսիսային լայնության 35 աստիճանի վրա հասնում է նույնիսկ 120 կիլոմետրի: Երբ նա դուրս է գալիս Ֆլորիդայի նեղուցից, նրանով մի օրում 2160 խորանարդ կիլոմետր ջուր է հոսում: Դա շատ անգամ ավելի է, քան երկրագնդի բոլոր գետերով հոսող ջրի քանակը: Ջուրը գնալով շատանում է և հյուսիսային լայնության 38 աստիճանի մոտ հասնում է իր ամենաբարձր մակարդակին:

Գոլֆստրիմն իր հետ հյուսիս է տանում հասարակածային երկրներից հավաքած բույսերի շատ մնացորդներ՝ ծառեր, ջրիմուռներ և այլն: Այդ ձևով Վեստ-Ինդիայից բերված արևադարձային բույսերն ու ծառերը ժամանակին համոզեցին Կոլումբոսին, որ Հնդկաստանը գտնվում է Ատլանտյան օվկիանոսի մյուս ափին:

Գոլֆստրիմը քանի գնում, այնքան ավելի է հեռանում Հյուսիսային Ամերիկայի ափերից և ընթանում հյուսիս-արևելք, դեպի Եվրոպա՝ նրա ափերը տաքացնելու: Մոտենալով Եվրոպային նա ճյուղավորվում է. մի ճյուղը գնում է դեպի Պիրենեյան թերակղզի, մյուսը՝ Բրիտանական կղզիները, երրորդը՝ Դանիական նեղուցը. իսկ գլխավոր հոսանքը՝ 180 կիլոմետր լայնությամբ, գնում է Սկանդինավյան թերակղզու արևմտյան ափերի երկարությամբ դեպի հյուսիս-արևելք, ապա արևելք՝ Բարենցի ծով, տաքացնելով այդ ծովի ափերը և Մուրմանսկը:

Սովետական գիտնականները և բևեռագետները հաստատել են, որ Գոլֆստրիմի ջրերը շատ ավելի խորն են գնում: Պապանինականները առաջին անգամ հայտնաբերեցին, որ Գոլֆստրիմի ազդեցությունը զգացվում է նաև Հյուսիսային բևեռում: Այնտեղ 500 մետր խորության վրա ջրի տաքությունը հասնում է երկու աստիճանի:

Գոլֆստրիմի նշանակությունը շատ մեծ է: Առանց նրան Սկանդինավյան թերակղզին տարվա մեծ մասը պետք է սառցապատ լիներ:

Գոլֆստրիմի ջրերն իրենց ջերմությունը հաղորդում են շրջապատող օդին և նա տաքանում է: Հայտնի է, որ մի խորանարդ մետր ջուրը մի աստիճան սառչելով նույն չափով տաքացնում է մոտ 3200 խորանարդ մետր օդ: Քանի որ այդ մասերում ամբողջ տարին իշխում են արևմտյան քամիները, ապա նրանք այդ տաք օդը տանում են դեպի եվրոպական ցամաքի խորքը: Եվրոպայի համար, կարծես թե ստացվում է բնական ջեռուցման սիստեմ:

Գոլֆստրիմի շնորհիվ հյուսիսային ծովերի ջրերը տաքանում են: Այդ ջրերում բազմանում են ծովային մանր կենդանիներ, որոնք ձկների ու ծովային այլ կենդանիների համար կերակուր են հանդիսանում: Այդ մասերում սովետական ձկնորսները մեծ քանակությամբ ձուկ են որսում:



## «ԵՐԿԱԹՈՒՂԻ»

*(Կրոսվորդ)*



ՈՒՂՂԱՀԱՅԱՑ

1. Փոխադրական միջոց:
2. Շոգեքարշերի վերանորոգման կայան:
3. Գնացքի մի մաս:
4. Գնացքների կանգ առնելու վայր:
5. Կանգնեցնելու մեխանիզմ:
7. Շոգեքարշի մաս:
10. Վագոնների միմյանց հարվածելու ուժը թուլացնող սարք:
12. Շարժումը մի ուրիշ կետի հաղորդող հարմարանք:

ՀՈՐԻԶՈՆԱԿԱՆ

6. Շոգեքարշի հիմնական մաս:
8. Ազդանշան տվող հարմարանք:
9. Վառարան:
11. Ջրի գազային վիճակ:
13. Վառելանյութի մի տեսակ:
14. Հեղուկ վառելանյութի մի տեսակ:
15. Երկաթուղագծի հիմնական մաս:

*Կազմեց Մ. ՄԱԴԱԹՅԱՆ*

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ


1. Ժողովրդի համար
2. Ընտանիք — Շ. ԹԱԹԻԿՅԱՆ . . . . . . 2
3. Մի դեպք մեծ կյանքից — Վ. ՄԽԱՎՅԱՆ . . 6
4. Այստեղ ապրել է Շահումյանը — Հր. ԲԱԴ-ՐԱՋՅԱՆ . . . . . . 8
5. Ստեփան Շահումյանի նամակը երեխաներին 10
6. Ստեփան Շահումյանին — Ս. ԿԱՊՈՒՏԻԿ-ՅԱՆ . . . . . . 10
7. Հարյուրերորդ հիերոգլիֆը — Ս. ՀԱՐՈՒ-ԹՅՈՒՆՅԱՆ . . . . . . 11
8. Արևի Սարը . . . . . . . . . 15
9. «Ժողովուրդների բարեկամություն» — Ս. ԽՍԱ-ՀԱԿՅԱՆ . . . . . . 16
10. Հարվածային իմ քեռու պես — Վ. ՎԱՐԴԱՆ-ՅԱՆ . . . . . . 18
11. Գեորգ Բաշինջաղյան — Մ. ՂԱԶԱՐՅԱՆ . . 19
12. Հերոսական տարիներ . . . . . . . . 20
13. Ժողովրդի ներկայացուցիչները — Ա. ՖԱԴԵԵՎ 20
14. Հաղթողները — Գ. ԱՌԱՔԵԼՅԱՆ . . . . . 23
15. Փ ի ղ ը — Վ. ՏԱԼՅԱՆ . . . . . . . . 25
16. Ազատարարը — Վ. ԱՆԱՆՅԱՆ . . . . . . 26
17. Աչքակապուկ — Ա. ՇԱՀԻՆՅԱՆ . . . . . 27
18. Շնորհալի աշխատանք — Դ. ԳԱԼՋՅԱՆ . . 29
19. Դպրոցամերձ հողամասում — Յ. ՀՈՎՀԱՆ-ՆԻՍՅԱՆ . . . . . . 30
20. Եվրոպայի «բնական վառարանը» — Կ. ԱՎԵ-ՏԻՍՅԱՆ . . . . . . 30
21. Մեր օրացույցը


Շապիկը նկ. Հր. ՌՈՒԽԿՅԱՆԻ




*Խմբագիր՝* ՍԱԼՅԱՆ Վ.

*Խմբագրական կոլեգիա՝* ԱՄԻՐՅԱՆ Մ., ԲԱԲԱԽԱՆՅԱՆ Վ., ԹԱԴԵՎՈՍՅԱՆ Թ., ԹԵՎԱՆՅԱՆ Վ., ԽԱՉԱՏՐՅԱՆ Հ., ԿԱՊՈՒՏԻԿՅԱՆ Ս., ՇԱԽՈՒԼՅԱՆ Մ., ՍԵՎՈՒՆՑ Գ.

„Пионер" на армянском языке. Адрес редакции: Ереван, ул. Маркса 21

*Հասցեն՝ Երևան, Մարքսի փողոց № 21, հեռախոսներ՝ 2-44-83, 2-59-06*

*ՎՖ 04712։ Պատվեր 710։ Տիրաժ 5000։ Տպագրական 2 1/4 մամուլ։ Ստորագրված է տպագրության 29.IX.1953 թ.*

*Հայպոլիգրաֆհրատի № 1 տպարան, Երևան, Ալավերդյանի փող. № 65։*




### Մեծ երգի հեղինակը

*(Ծննդյան 105 տարին)*

Ելի՛ր ում կյանքը անիծել է,
Ով ճորտ է, մերկ է և ստրուկ.
Արդեն վառվում են մեր սրտերը,
Արդեն կռվի ենք մենք ձգտում:

Ամեն մեկը անգիր գիտե «Ինտերնացիոնալի» այս տողերը: «Ինտերնացիոնալը» աշխարհի աշխատավորների հանդիսավոր երգն է, որը



երկու բանվորի ստեղծագործություն է: Խոսքերը գրել է ֆրանսիացի բանաստեղծ-կոմունար Էժեն Պոտյեն, իսկ երաժշտությունը՝ բելգիացի Պյեր Դեգեյտերը:

Պ. Դեգեյտերն իր ազատ ժամանակը նվիրում էր բանվորական երգեցիկ խմբերի կազմակերպման և երաժշտություն հորինելու գործին: «Ինտերնացիոնալի» երաժշտությունը նա գրել է 1888 թվականին:

Դեգեյտերն ապրում էր Փարիզի Սեն Դենի արվարձանում: 1920 թվականին նա ընդունվեց Ֆրանսիական Կոմպարտիայի շարքերը: 1928 թվականին Դեգեյտերը եկավ Սովետական Միություն, ուր նրան խանդավառ կերպով ընդունեցին:

Մինչև 1944 թվականը «Ինտերնացիոնալը» Սովետական Միության Պետական հիմնն էր: Այժմ «Ինտերնացիոնալը» Սովետական Միության Կոմունիստական պարտիայի հիմնն է:

Պ. Դեգեյտերը մեռավ 1932 թվականին:

### Մեռած քաղաքի հայտնագործողը

— Ուզո՞ւմ ես ինձ հետ գնալ և տեսնել, թե որտեղ ինչպե՞ս են ապրում մարդիկ, թե ինչպիսի՞ն է բնությունն այդ տեղերում,— ասաց հռչակավոր ճանապարհորդ Պրժևալսկին պատահաբար հանդիպելով ժիր պատանի Պետյա Կոզլովին: Կոզլովն ուրախությունից այնպես շփոթվեց, որ պատասխանի փոխարեն ասաց.

— Իսկ ե՞րբ պատրաստ լինեմ ճանապարհվելու. հետս տաք շորեր վերցնե՞մ...

Դա 1883 թվականին էր:

Այսպես Պ. Կոզլովը դարձավ աշխարհագրագետ-հետազոտող: Նա սովորեց արիաբար հաղթահարել դժվարությունները:



Պրժևալսկու խորհրդով Կոզլովը մտավ զինվորական դպրոցը, որը ավարտեց 1888 թվականին: Այնուհետև գլխավորեց մի շարք արշավախմբեր:

Սակայն Կոզլովն իր կյանքի նպատակը դարձրեց Խարա-Խոտո մեռած քաղաքի հայտնագործումը: 1907—09 թվականների արշավի ժամանակ Կոզլովը հաղթահարելով մեծ դժվարություններ՝ հայտնագործեց Մոնղոլիայի անապատների ավազների տակ թաղված Խարա-Խոտոն: Այստեղ Կոզլովը գտավ անծանոթ լեզվով գրած գիտական բացառիկ արժեք ունեցող ձեռագրեր, չինական հին գրքեր, դրամներ, զենքեր: Խարա-Խոտոն նրան համաշխարհային հռչակ բերեց: Կոզլովը ընտրվեց աշխարհի գրեթե բոլոր աշխարհագրական ընկերությունների պատվավոր անդամ և ստացավ մի քանի ոսկե մեդալ: Կոզլովը վերջին անգամ Մոնղոլիայում եղավ Սովետական իշխանության օրոք: Համամիութենական աշխարհագրական ընկերությունը նրան պատվավոր անդամ ընտրեց: Հոկտեմբերին լրացավ Պ. Կ. Կոզլովի ծննդյան 90 տարին: Պ. Կ. Կոզլովը մեռավ 1935 թվականին:

### Գրող, գիտնական, ճանապարհորդ

Շատերն են կարդացել «Պլուտոնիա», «Սաննիկովի երկիրը» գիտաֆանտաստիկ վեպերը: «Պլուտոնիայի» մեջ հեղինակը վերակենդանացնում է մեր մոլորակի հին երկրաբանական անցյալի պատկերները:



Այս հետաքրքիր վեպերի հեղինակը Վլադիմիր Աֆանասևիչ Օբրուչևն է, որը միաժամանակ և տաղանդավոր գրող է, և նշանավոր գիտնական և հայտնի ճանապարհորդ:

Դեռ երիտասարդ հասակում Օբրուչևը հետազոտեց Մոնղոլիան, Գոբին, Սիչուանը, Նան-Շանը, Ալտայը, Անդրբայկալը և այլն: Այս երկրների գեոլոգիական և աշխարհագրական մանրամասն գիտական բնութագրությամբ նա մեծ գիտնականի անուն հանեց: Սովետական կառավարությունը բարձր գնահատելով Օբրուչևի ծառայությունները, նրան շնորհեց Սոցիալիստական Աշխատանքի Հերոսի կոչում և Ստալինյան մրցանակ: Վ. Ա. Օբրուչևի գրքերը սեր են զարթեցնում դեպի աշխարհագրությունը, ճանապարհորդությունը, դեպի երկրի գեոլոգիական անցյալի ուսումնասիրությունը: Վերջերս ռուսերեն լույս տեսավ Օբրուչևի «Կենտրոնական Ասիայի խորքերում» վեպը, որի մեջ հեղինակը տալիս է Կենտրոնական Ասիայի բնության ցայտուն պատկերները:

1953 թ. նոյեմբերին լրանում է Օբրուչևի ծննդյան 90 տարին:



ՑՅՈՒԱՆ ՑԻՆ-ՑՅԱՆ. «Նոր տարվա դիմավորումը հողի բաժանումից հետո»։



ՄՈ ԼԱՆ. «Ողջույն նոր տարվան»։